Այսպէս, առաջին անգամ ըլլալով լոյս ընծայելով հայկական առաջին օփերան՝ «Արշակ Բ.»-ը, կը կարծենք յարգանքի համեստ տուրք մը մատուցած ըլլալ մեծատաղանդ երաժշտահանին, որ նիւթական ու բարոյական բիւր զոհողութիւններու գնով յաջողած էր ստեղծագործել իր անդրանիկ երկը եւ ողջ կեանքն ապրած զայն գէթ մէկ անգամ բեմադրուած տեսնելու զուր տենչանքով:

Դարաւոր փոշիներու մէջէն լոյս աշխարհ բերելով այս հրաշակերտը, մեր առջեւ կը յառնի մեծատաղանդ երաժշտահան մը՝ որ լիովին կը տիրապետէ օփերայի երաժշտութեան անհրաժեշտ գեղարուեստական ու արհեստավարժական (թեքնիքական) տարրերուն, ստեղծագործելով ներքին բախումներով ու հակամարտութիւններով առլցուն, բայց միշտ շաղկապուած միտքերով ու շղթայակապ զարգացումով ամրապընդըւած չքնաղ երկ մը: «Արշակ Բ.»՝ շնորհիւ իր ցայտուն երաժշտական կերպարներուն, գունեղ ու վճիտ գործիքաւորումին, յորդառատ մեղեդիներուն, տրամաբանուած ու նպատակային սերգներուն, բնական ու արտայայտիչ երգչային հնչաղասութեան, լիպրեթթոյի թատրերգաբանական (տրամաթիւրժիք) բովանդակութեան համահնչիւն երաժշտութեամբ, արժանի է դառնալու աշխարհի մեծագոյն օփերայի թատրոններու մշտական զարդը:

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Ձեռագիրներուն ամբողջական պատկերը տուած ըլլալու համար եւ «Արշակ Բ.»-ի նախնական տարբերակը յստակեցնելու միտումով, ստորեւ կը մէջբերենք Թիւ 4-ի այն բոլոր հատուածները՝ որոնք մեծ թէ փոքր տարբերութիւններ ունին Թիւ 3-ին նկատմամբ եւ որոնք փոփոխութիւն կրած են կամ չեն արտացոլուած այս տպագրութեան մէջ.

## ATTO PRIMO

### No.1. Introduzione

**Հատուած 13.**

Թիւ 3/2ա.- Միայն Banda-ն կը կրէ < : Միւս բոլոր նուագարանները հատածի երկրորդ կէսէն կը կրեն *ff* :

Թիւ 4/2.- Հատածի երկրորդ քառորդէն մինչեւ վերջ կը կրէ < :

**Հատուած 17.**

Թիւ 4/2.- Այս եւ յետագայ այլ հատածներուն մէջ գործածուած արփեճիոները ( ⌇ )՝ որոնք արտացոլուած չեն Թիւ 3-ին մէջ, նախընտրեցինք պահպանել:

**Հատուած 22. Piano.**

Թիւ 4/2ա.- Աջ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 23. Piano.**

Թիւ 4/2ա.- Առաջին քառորդը գրուած է այսպէս.



Բաց աստի, ոչ մէկ ձայնակապում կայ:

**Հատուածներ 24-25. Piano.**

Թիւ 4/2ա.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 25. Piano.**

Թիւ 4/2ա.- Երկրորդ քառորդը ձայնակապուած է.



**Հատուած 27. Piano.**

Թիւ 4/2ա.- Աջ ձեռքի ձայնակապը չկայ:

**Հատուածներ 30-32. Piano.**

Թիւ 4/3.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 34. Piano.**

Թիւ 4/3.- Ձախ ձեռքը ձայնակապում չունի:

**Հատուածներ 35-36. Piano.**

Թիւ 4/3.- Ձախ ձեռքը նման է հատուածներ 31-32-ին:

**Հատուած 37. Piano.**

Թիւ 4/3.- Ձախ ձեռքի թրիոլէները՝ ձայնակապուած.



**Հատուած 40. Piano.**

Թիւ 4/3ա.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուածներ 43-44. Piano.**

Թիւ 4/3ա.- Հատուածներուն միջեւ գտնուող ձայնակապը չկայ:

**Հատուած 45. Piano.**

Թիւ 4/3ա.- Ձախ ձեռքի առաջին քառորդը՝ 

**Հատուածներ 50-52. Piano.**

Թիւ 4/4.- Գրուած է այսպէս.




**Հատուած 53. Coro, piano.**

Թիւ 4/4.- Առաջին քառորդին կշռոյթը՝ 

**Հատուած 54. Coro.**

Թիւ 4/4ա.- Երկրորդ քառորդին կշռոյթը՝ 


**Հատուածներ 54-55. Piano.**

Թիւ 4/4ա.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուածներ 56-58. Piano.**

Թիւ 4/4ա.- Գրուած է այսպէս.



**Հատուած 59. Piano.**

Թիւ 4/4ա.- Առաջին քառորդին կչռոյթը Coro-ին նման է՝ 𝅘𝅥𝅮 𝄾

**Հատուածներ 60-61. Piano.**

Թիւ 4/4ա.- Ձախ ձեռքը ճիշտ հատուածներ 54-55-ին նման է:

**Հատուածներ 65-67. Piano.**

Թիւ 4/5.- Գրուած է այսպէս.




**Հատուածներ 68-72. Piano.**

Թիւ 4/5-5ա.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 73. Piano.**

Թիւ 4/5ա.- Գրուած է այսպէս.



**Հատուած 74. Piano.**

Թիւ 4/5ա.- Ձախ ձեռքի երրորդ քառորդը գրուած է՝

**Հատուածներ 75-76. Piano.**

Թիւ 4/5ա.- Գրուած է այսպէս.



**Հատուածներ 77-78. Piano.**

Թիւ 4/5ա.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 78. Tenori.**

Թիւ 4/5ա.- Երրորդ քառորդը գրուած է՝  Soprani -ին նման:

**Հատուած 79. Piano.**

Թիւ 4/6.- Գրուած է այսպէս.



**Հատուած 80. Piano.**

Թիւ 4/6.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 81. Piano.**

Թիւ 4/6.- Գրուած է այսպէս.



**Հատուածներ 82-122.**

Նուագախումբի մասը անփոփոխ կրկնութիւնը ըլլալով հատուածներ 23-63-ին, թիւ 3/11-16-ին մէջ անոնք ձայնանշուած չեն՝ այլ նշանակուած կրկնութեան հանգամանքները: Ձայնանշուած է Coro -ն: Հետեւաբար, նոյնութեամբ պահպանեցինք հատուածներ 23-63-ի դաշնակի նուագակցութիւնը:

Թիւ 4/6-8ա-ին մէջ, հատուածներ 82-122-ը ամբողջութեամբ ձայնանշուած են, որոնց դաշնակի նուագամասը՝ նոյն ձեռագիրին հատուածներ 23-63-ին նկատմամբ, ունին հետեւեալ տարբերութիւնները.

ա.- 




Ձայնահատին եւ արփեճիոյին վերացումով, հատուած 82-ը կը նոյնանայ թիւ 3-ին հետ:

բ.- 



Հատածներ 83-86-ի վերջաւորութեան աւելցուած աջ ձեռքի տասնվեցերորդականները՝ արդիւնքն են Coro -ին մէջ ներմուծուած փոփոխութեան: Հատած 84-ի ձայնակապերու բացակայութեամբ՝ կը նոյնանայ թիւ 3-ին հետ:

գ.-



Ասիկա նոյնպէս արդիւնքն է Coro -ի փոփոխութեան:

դ.- Հատած 96-ի ձախ ձեռքի թրիոլէնները առանց ձայնակապի են (հմմտ. հատած 37-ի ծանօթագրութեան հետ), որով ան կը նմանի թիւ 3-ին:

ե.-



Հատած 100-ի յաւելեալ տասնվեցերորդականը դարձեալ Coro -ին հետեւանքն է:

զ.-



է.- Հատած 109-ին մէջ, աջ ձեռքը ձայնակապեր չի կրեր (հմմտ. հատած 50-ի ծանօթագրութեան հետ):

ը.- Հատածներ 109-111-ը երանգանիշեր չեն պարունակեր (հմմտ. հատածներ 50-52-ի ծանօթագրութեան հետ):

թ.-



ժ.-



ժա.-



ժբ.-



**Հատած 92. Coro.**

Թիւ 4/6ա.- Վերջին քառորդին կշռոյթը՝ ra bal

**Հատածներ 103-104. Bassi.**

Թիւ 4/7ա.- Հատած 103-ի վերջին եւ հատած 104-ի առաջին քառորդները գրուած են միաձայն.




**Հատած 124. Piano.**

Թիւ 4/8ա.- Նշուած է *ff* :

**Հատածներ 124-125. Piano.**

Թիւ 4/8ա.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատած 128. Piano.**

Թիւ 4/9.- Գրուած է այսպէս.



**Հատածներ 130, 132, 134. Piano.**

Թիւ 4/9.- Ոչ մէկ շեշտ կը կրէ:

**Հատուած 136.- Piano.**
Թիւ 4/9.- Գրուած է այսպէս.



**Հատուած 137. Piano.**
Թիւ 4/9ա.- Երանգանիշ չունի:

**Հատուած 139. Piano.**
Թիւ 4/9ա.- Աջ ձեռքը ձայնակապեր չունի:

**Հատուած 140. Piano.**
Թիւ 4/9ա.- Աջ ձեռքի սԹաքքաԹոներն ու շեշտը չկան:

**Հատուած 141. Piano.**
Թիւ 4/9ա.- Հատուածի երկրորդ կէսի աջ ձեռքի ձայնակապերը չկան:

**Հատուածներ 144, 149. Piano.**
Թիւ 4/9ա, 10.- Աջ ձեռքի շեշտերը չկան:

**Հատուածներ 152-153. Piano.**
Թիւ 4/10.- Ձախ ձեռքը գրուած է՝




**Հատուած 156. Piano.**
Թիւ 4/10.- Ձայնակապերը չկան:

**Հատուածներ 161-173. Piano.**
Թիւ 4/10ա-11.- Գրուած է այսպէս.



**Հատուածներ 174-181. Piano.**
Թիւ 4/11-11ա.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 182. Piano.**
Թիւ 4/11ա.- Իբրեւ երանգանիշ նշանակուած է *ff* :

**Հատուած 183. Vartan, Coro, Piano.**
Թիւ 4/12.- Գրուած է այսպէս.



Հատուած 184. Piano.
Թիւ 4/12.- Իբրեւ երանգանիշ նշանակուած է *pp* :

Հատուած 186. Piano.
Թիւ 4/12.- Իբրեւ երանգանիշ նշանակուած է *ff* :

Հատուած 188. Piano.
Թիւ 4/12ա.- Իբրեւ երանգանիշ նշանակուած է *pp* :

Հատուած 189. Piano.
Թիւ 4/12ա.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



Հատուած 190. Piano.
Թիւ 4/12ա.- Երանգանիշ չկայ:

Հատուած 197. Piano.
Թիւ 4/13ա.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



Հատուածներ 198-205. Piano.
Թիւ 4/13ա-14ա.- Ձախ ձեռքը նման է Հատուածներ 174-181-ին (տե՛ս այս Հատուածներուն ծանօթագրութիւնը):

Հատուած 206. Piano.
Թիւ 4/14ա.- Իբրեւ երանգանիշ նշանակուած է *ff* (տե՛ս նաեւ Հատուած 182-ի ծանօթագրութիւնը):

Հատուած 207.
Թիւ 4/15.- Ձայնակապումը այսպէս է.



Հատուած 208. Piano.
Թիւ 4/15.- Իբրեւ երանգանիշ նշանակուած է *pp* (տե՛ս նաեւ Հատուած 184-ի ծանօթագրութիւնը):

Հատուած 210. Piano.
Թիւ 4/15.- Իբրեւ երանգանիշ նշանակուած է *ff* (տե՛ս նաեւ Հատուած 186-ի ծանօթագրութիւնը):

Հատուած 212. Piano.
Թիւ 4/15ա.- Իբրեւ երանգանիշ նշանակուած է *pp* (տե՛ս նաեւ Հատուած 188-ի ծանօթագրութիւնը):

Հատուած 213. Piano.
Թիւ 4/15ա.- Գրուած է Հատուած 189-ին նման (տե՛ս այս Հատուածին ծանօթագրութիւնը):

Հատուած 214. Piano.
Թիւ 4/15ա.- Նշանակուած է *ff* :

Հատուածներ 221, 226. Piano.
Թիւ 4/16ա,17.- Աջ ձեռքի երրորդ քառորդին ձայնակապը այսպէս է.



Հատուածներ 222, 227. Piano.
Թիւ 4/16ա, 17ա.- Աջ ձեռքի երրորդ քառորդին ձայնակապը այսպէս է.



Հատուածներ 224-225, 229-230. Piano.
Թիւ 4/17, 17ա.- Ձախ ձեռքի իւրաքանչիւր ութերորդականը կը կրէ շեշտ (>):

Հատուածներ 237-239. Piano.
Թիւ 4/18ա.- Կը կրեն ⟩ :

Հատուածներ 238-239. Piano.
Թիւ 4/18ա.- Ոչ մէկ շեշտ (^) կայ:

## No.2. Scena e duetto

Հատուած 1. Piano.
Թիւ 4/20ա.- Ձախ ձեռքի երկու տասնվեցերորդականները կը կրեն սթաքքաթօ: Հատուածներ 2 եւ 3-ի ձախ ձեռքը գրուած է կրկնութեան նշաններով, որով նոյն ձայնանիշերը եւս պիտի կրեն սթաքքաթոներ:

Հատուածներ 2, 6. Piano.
Թիւ 4/20ա.- Աջ ձեռքի *սոլ-լա*ն ձայնակապուած չեն:

Հատուածներ 3, 7. Piano.
Թիւ 4/20ա.- Աջ ձեռքի *մի-ֆա*ն ձայնակապուած չեն:

Հատուած 4. Piano.
Թիւ 4/20ա.- Աջ ձեռքի քառորդները կը կրեն շեշտ (>): Ձախ ձեռքը կը կրէ հետեւեալ սթաքքաթոները.



Հատուած 5. Piano.
Թիւ 4/20ա.- Ձախ ձեռքի *մի*ն սովորական *պեմոլ* է:

Հատուածներ 5, 6. Piano.
Թիւ 4/20ա.- Աջ ձեռքի քառորդները կը կրեն շեշտ (>):

Հատուած 7. Piano.
Թիւ 4/20ա.- Աջ ձեռքի վերջին ձայնանիշը *ռէ*ի փոխարէն *սի* է, այսպէս՝



Հատուած 8. Piano.
Թիւ 4/20ա.- Ձախ ձեռքի առաջին ութերորդականը կը կրէ սթաքքաթօ: Հատուածի երրորդ բախումին նշանակուած է *sf* :

Հատուած 9. Piano.
Թիւ 4/20ա.- Գրուած է այսպէս.



Հատուած 14. Arsace.
Թիւ 4/21.- Երկրորդ բախումին կշռոյթը այսպէս է. 𝄾 𝅘𝅥𝅮 che

**Հատուածներ 16-17. Piano.**

Թիւ 4/21. <-ն եւ շեշտերը (>) չկան:

**Հատուած 19. Piano.**

Թիւ 4/21.- Երկու ձեռքերուն ութերորդականները կը կրեն սթաքքաթոներ:

**Հատուած 21. Piano.**

Թիւ 4/21.- Հատուածին երկրորդ կէսը գրուած է այսպէս.



Չկայ աջ ձեռքի ձայնակապը, իսկ ձախ ձեռքի վերջին *մի*ին փոխարէն գրուած է *սօ*:

**Հատուածներ 22-23. Piano.**

Թիւ 4/21.- Գրուած են այսպէս.



**Հատուած 28. Piano.**

Թիւ 4/21ա.- Աջ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 29. Piano.**

Թիւ 4/21ա.- *molto leggiero* նշուած չէ:

**Հատուածներ 29-30. Paransema.**

Թիւ 4/21ա.- Գրուած է այսպէս.




**Հատուածներ 29-30, 31-32, 33-34, 35-36. Piano.**

Թիւ 4/21ա.- Ձայնակապումը այսպէս է.



**Հատուած 32. Paransema.**

Թիւ 4/21ա.- Հատուածի առաջին կէսը կը բովանդակէ >:

**Հատուածներ 34-35. Paransema.**

Թիւ 4/21ա.- Գրուած է այսպէս.




**Հատուածներ 36-39. Piano.**

Թիւ 4/21ա-22.- Ձայնանիշերն ու երանգանիշերը, ինչպէս նաեւ հատուած 39-ի թրեմոլոն գրուած են այսպէս.






**Հատուած 39. Paransema.**

Թիւ 4/22.- Բարձր տարբերակը չկայ:

**Հատուած 40. Piano.**

Թիւ 4/22.- Հատուածի առաջին կէսը կը բովանդակէ >:

**Հատուած 41. Piano.**

Թիւ 4/22.- Ձայնակապ չկայ:

**Հատուածներ 48-49. Piano.**

Թիւ 4/22.- Ձախ ձեռքին ձայնակապումը այսպէս է.



**Հատուած 51. Piano.**

Թիւ 4/22.- Երանգանշումն ու ձայնակապումը այսպէս է.



**Հատուածներ 52-55. Piano.**

Թիւ 4/22ա.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 54. Piano.**

Թիւ 4/22ա.- Երրորդ քառորդը կը բովանդակէ >:

**Հատուած 56. Piano.**

Թիւ 4/22ա.- Ձախ ձեռքին ձայնակապումը այսպէս է.



**Հատուածներ 57-59. Piano.**

Թիւ 4/22ա.- Գրուած է այսպէս.




**Հատուած 60. Piano.**

Թիւ 4/22ա.- Կը բովանդակէ < :

Ձախ ձեռքը երկրորդ ութերորդականէն կը կրէ սթաքքաթօ:

**Հատած 61. Piano.**
Թիւ 4/22ա.- Կը բովանդակէ > :

**Հատած 62. Piano.**
Թիւ 4/22ա.- Ձախ ձեռքը կը կրէ սթաքքաթօ:

**Հատած 63. Piano.**
Թիւ 4/22ա.- Գրուած է այսպէս.



**Հատած 64. Paransema, Piano.**
Թիւ 4/22ա.- *f*-ին փոխարէն նշուած է *sf* : Piano-ն կը բովանդակէ < :

**Հատած 65. Piano.**
Թիւ 4/22ա.- Կը բովանդակէ > :

**Հատած 66. Piano.**
Թիւ 4/22ա.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատած 67. Paransema, Piano.**
Թիւ 4/22ա.- Գրուած է այսպէս.




**Հատածներ 72-74. Piano.**
Թիւ 4/23.- Գրեթէ նման է Հատածներ 56-58-ին (տե՛ս վերջիններուն ծանօթագրութիւնները):

**Հատածներ 75-80. Paransema, Piano.**
Թիւ 4/23.- Գրուած է այսպէս.







**Հատածներ 82-83. Piano.**
Թիւ 4/23.- Գրուած է այսպէս.




**Հատածներ 84-147. Piano.**
Թիւ 4/23ա-26.- Կը գտնուին ձայնակապերու, շեշտերու, ընթացքի եւ չարադրանքի բազմաթիւ տարբերութիւններ, որով յարմար դատեցինք զայն ամբողջութեամբ մէջբերել ստորեւ.









**Հատած 93. Arsace.**
Թիւ 4/23ա.- Կշռոյթի տարբերութիւն կայ.




**Հատած 104. Arsace.**
Թիւ 4/24.- Գրուած է նաեւ *մի*ին բարձր տարբերակը.




**Հատած 117. Arsace.**
Թիւ 4/24ա.- Կշռոյթի տարբերութիւն կայ.




**Հատածներ 128–129. Arsace.**
Թիւ 4/25.- Կշռոյթի տարբերութիւն կայ.




**Հատած 143. Paransema, Arsace.**
Թիւ 4/25ա.- Կը բովանդակէն ⟩ :

**Հատածներ 148–170.**

Անփոփոխ կրկնութիւնը ըլլալով հատածներ 124–146-ին, Թիւ 3/17–19ա-ին մէջ նուագախումբը ձայնանշուած չէ՝ այլ նշանակուած կրկնութեան հանգամանքները: Ձայնանշուած են Paransema-ն եւ Arsace-ն: Հետեւաբար, նոյնութեամբ պահպանեցինք հատածներ 124–146-ի դաշնակի նուագամասը:

Թիւ 4/26–26ա-ին մէջ, հատածներ 148–170-ը ամբողջութեամբ ձայնանշուած են, որոնց դաշնակի նուագամասը՝ նոյն ձեռագիրին հատածներ 124–146-ին նկատմամբ ունին աննշան տարբերութիւններ:

**Հատածներ 172–177. Piano.**
Թիւ 4/27.- Գրուած է այսպէս.

**Հատած 183. Piano.**
Թիւ 4/27.- Գրուած է այսպէս.



Հատածը Թերի ըլլալ կը Թուի: Աջ ձեռքի ուԹերորդական ձայնահատէն ետք չարունակուԹիւն մը պէտք է գոյուԹիւն ունենայ:

**Հատած 184. Piano.**
Թիւ 4/27ա.- *ff*-ին փոխարէն նչանակուած է *sf*:

**Հատած 185. Piano.**
Թիւ 4/27ա.- Թրեմոլոնները ուղեկցուած են ⟩ -ով, իսկ երեսուներկուերորդականներուն առաջին ձայնանիշը կը կրէ *sf*:

**Հատածներ 187-189. Paransema, Piano.**
Թիւ 4/27ա.- Գրուած է այսպէս.




Նկատելի է, որ Թիւ 3/21-ին մէջ, հատած 189-ի ձայնանիչերը (Oboi, Clarinetti, Violini I, II, Viole) նախ գրուած են իբրեւ ուԹերորդականներ՝ ինչպէս Թիւ 4-ը, յետոյ սրբագրուած ու վերածուած են քառորդներու:

**Հատածներ 190-209. Piano.**
Թիւ 4/27ա-28.- Գրուած է այսպէս.

190 **Maestoso sostenuto**

*pp*

193

196

199 **Più animato**

*pp*

202

205

**Հատածներ 210-226.**

Նուագախումբի մասը անփոփոխ կրկնութիւնը ըլլալով հատածներ 192-208-ին, Թիւ3/24-26-ին մէջ անոնք ձայնանշուած չեն՝ այլ նշանակուած կրկնութեան հանգամանքները: Ձայնանշուած են Paransema -ն ու Arsace-ն: Հետեւաբար, նոյնութեամբ պահպանեցինք հատածներ 192-208-ի դաշնակի նուագամասը:

Թիւ 4/28-29-ին մէջ, հատածներ 210-226-ը ամբողջութեամբ ձայնանշուած են, որոնց դաշնակի նուագամասը՝ նոյն ձեռագիրին հատածներ 192-208-ին նկատմամբ, բացի ձայնակապումի քանի մը անհապատասխանութենէ, ունին հետեւեալ տարբերութիւնները.

ա.-



բ.-



գ.-



**Հատածներ 227-235. Piano.**

Թիւ 4/29-29ա.- Գրուած է այսպէս.




**Հատածներ 236-237. Piano.**

Թիւ 4/29ա.- Աջ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատածներ 240-241. Piano.**

Թիւ 4/29ա -30.- Գրուած է այսպէս.




**Հատած 242. Piano.**

Թիւ 4/30.- Աջ ձեռքի վերջին ձայնանիշը *սոլի* փոխարէն *սի* է՝



**Հատած 243. Piano.**

Թիւ 4/30.- Աջ ձեռքի վերջին ենթադասոյթը գրուած է դատարկ ութեակներով՝



**Հատածներ 244-245. Piano.**

Թիւ 4/30.- Ձախ ձեռքի ձայնակապերը չկան:

**Հատածներ 248-250. Piano.**

Թիւ 4/30-30ա.- Գրուած են այսպէս.





**Հատուած 251. Piano.**
Թիւ 4/30ա.- Երանգանիշ չկայ:

**Հատուած 252. Piano.**
Թիւ 4/30ա.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 255. Piano.**
Թիւ 4/30ա.- Երանգանիշ չկայ:

**Հատուած 259. Piano.**
Թիւ 4/31.- Կը բովանդակէ < :

**Հատուածներ 260, 264. Piano.**
Թիւ 4/31.- Հատուածներուն առաջին կէսին աջ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուածներ 265-266. Piano.**
Թիւ 4/31.- Աջ ձեռքը գրուած է այսպէս.



Կը թուի՝ ձեռագրական վրիպակ մըն է եւ ձախ ձեռքին հետ պէտք է կազմէ մարթելլաթօ:

## No. 3. FINALE PRIMO

**Հատուածներ 1, 3, 5, 7, 11. Piano.**
Թիւ 4/32.- Հատուածներուն վերջաւորութեան հանդէպ եկող տասնվեցերորդականներով ենթադասոյթները բոլորն ալ ձայնակապուած են՝



**Հատուած 4. Piano.**
Թիւ 4/32.- Առաջին կէսը կը բովանդակէ > :
Աջ ձեռքի վերջին քառորդը գրուած է՝



**Հատուած 7. Piano.**
Թիւ 4/32.- Աջ ձեռքի վերջին քառորդին կշռոյթը տարբեր է՝



**Հատուածներ 8-9. Piano.**
Թիւ 4/32.- Գրուած է այսպէս.



**Հատուած 15. Piano.**
Թիւ 4/32ա.- Երկու ձեռքերուն առաջին երկու քառորդ ձայնանիշերը չեշտ չեն կրեր:

**Հատուած 19. Knel.**
Թիւ 4/32ա.- Կշռոյթի տարբերութիւն մը՝




**Հատուած 20. Knel.**
Թիւ 4/32ա.- «la» բառին հետ կապուած *տօ*ն կը կրէ չեշտ (>):

**Հատուած 21. Piano.**
Թիւ 4/32ա.- Նշանակուած է ***ff*** : Ոչ մէկ չեշտ կը կրէ:

**Հատուած 23. Piano.**
Թիւ 4/32ա.- Երկրորդ քառորդին նշանակուած է *dim.*, իսկ վերջին ութերորդականին՝ ***pp*** :

**Հատուած 24. Piano.**
Թիւ 4/32ա.- *allarg.* -ին փոխարէն՝ *rallentando*:

**Հատուած 25. Knel, Piano.**
Թիւ 4/33.- Knel՝ ***p***, Piano՝ ***pp*** :

**Հատուածներ 26-27. Knel, Piano.**
Թիւ 4/33.- *cresc.* կը սկսի հատուած 27-ի երկրորդ կէսէն, փոխանակ հատուած 26-ին:

**Հատուած 29. Piano.**
Թիւ 4/33.- < -ին փոխարէն հատուածին սկիզբը նշանակուած է ***f*** :

**Հատուած 30. Piano.**
Թիւ 4/33.- Երանգանիշ չկայ:

**Հատուած 32. Piano.**
Թիւ 4/33.- Հատուածին սկիզբը նշանակուած է ***sf***:

**Հատուած 34. Piano.**
Թիւ 4/33.- Նշուած է ***ff*** :

**Հատուած 35. Valiance.**
Թիւ 4/33.- Վերջին ձայնանիշը՝ ութերորդական. so!

**Հատուած 37. Piano.**
Թիւ 4/33ա.- Նշուած է ***p*** :

**Հատուած 42. Knel.**
Թիւ 4/33ա.- Ձայնանիշը աւելի երկար է՝ di?

**Հատուածներ 42-45. Piano.**
Թիւ 4/33ա.- Գրուած է այսպէս.





**Հատուած 46. Piano.**

Թիւ 4/33ա.- Նշուած է միայն *p*:

**Հատուածներ 46-65. Piano.**

Թիւ 4/33ա-34ա.- Աջ ձեռքի կրկնուող ենթադասոյթները մեծ մասամբ ձայնակապուած են    կամ    :

**Հատուածներ 47-48. Piano.**

Թիւ 4/33ա.- Աջ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 51. Piano.**

Թիւ 4/34.- Հատուածի երկրորդ կէսին, աջ ձեռքը ձայնակապ չունի:

**Հատուած 53. Piano.**

Թիւ 4/34.- Ոչ մէկ սթաքքաթօ եւ ձայնակապ կը կրէ: Հատուածի առաջին կէսը կը բովանդակէ < , երկրորդ կէսը՝ > :

**Հատուած 55. Piano.**

Թիւ 4/34.- Սթաքքաթօներ չկան: Հատուածի առաջին կէսը կը բովանդակէ < , երկրորդ կէսը՝ > :

**Հատուած 56. Piano.**

Թիւ 4/34.- Նշանակուած է *p* :

**Հատուած 57. Piano.**

Թիւ 4/34.- Հատուածի առաջին կէսի աջ ձեռքի ձայնակապումն այսպէս է.



**Հատուած 58. Piano.**

Թիւ 4/34.- *p*-ն չկայ: Նշուած է միայն *f* :

**Հատուածներ 59-60. Piano.**

Թիւ 4/34.- Երանգանիշեր չկան:

**Հատուած 61. Piano.**

Թիւ 4/34.- *f* -ին փոխարէն նշանակուած է ամբողջ հատուածով երկարող < : Ոչ մէկ ձայնակապ կայ:

**Հատուած 62.**

Թիւ 4/34ա.- Երանգանիշ չկայ:

**Հատուածներ 65-66. Piano.**

Թիւ 4/34ա.- Աջ ձեռքի ձայնակապումն այսպէս է.



**Հատուածներ 66-67. Piano.**

Թիւ 4/34ա.- Երանգանիշեր չկան:

**Հատուած 67. Piano.**

Թիւ 4/34ա.- Աջ ձեռքը ոչ մէկ ձայնակապ ունի:

**Հատուածներ 68-69. Piano.**

Թիւ 4/34ա.- Երանգանիշերն ու ձայնակապումը հետեւեալ կերպով դասաւորուած են.







**Հատուած 70. Piano.**

Թիւ 4/34ա.- *allarg.*-ին հետ նշանակուած է նաեւ > :

**Հատուած 71. Piano.**

Թիւ 4/34ա.- Ձախ ձեռքի *ֆա*յին փոխարէն գրուած է *լա*՝



**Հատուածներ 72-77. Piano.**

Թիւ 4/34ա-35.- Երկու ձեռքերը ոչ մէկ ձայնակապ եւ սթաքքաթօ կը բովանդակեն:

**Հատուած 72. Piano.**

Թիւ 4/34ա.- Երկրորդէն չորրորդ ութերորդականներուն համար նշանակուած է > :

**Հատուած 73. Piano.**

Թիւ 4/34ա.- Ձախ ձեռքի բամբի *ռէ*ին փոխարէն գրուած է *սոլ*՝



**Հատուած 76. Piano.**

Թիւ 4/35.- Ձախ ձեռքի ութեակները կը սկսին հատուածի սկիզբէն:

**Հատուած 78. Piano.**

Թիւ 4/35.- Գրուած է *rimettendo **ff** e pesante*:

**Հատուած 79. Knel.**

Թիւ 4/35.- *Ֆան* կը կրէ չեշտ եւ իր տեւողութիւնը նուագախումբին նման է՝




**Հատուած 79. Piano.**

Թիւ 4/35.- Նշանակուած է > : Աջ ձեռքը կը կրէ չեշտ:

**Հատուած 80. Piano.**

Թիւ 4/35.- Նշուած է *pp primo tempo*: Աջ ձեռքը այսպէս է.



**Հատուած 83. Piano.**

Թիւ 4/35.- Երկրորդ կէսը գրուած է այսպէս.



**Հատուած 86. Piano.**
Թիւ 4/35.- Հատուածին սկիզբը նշուած է *sf*:

**Հատուած 87. Piano.**
Թիւ 4/35ա.- Երանգանիշ չկայ:

**Հատուածներ 88-89. Piano.**
Թիւ 4/35ա.- Աջ ձեռքը ոչ մէկ ձայնակապ կը կրէ:

**Հատուած 90. Piano.**
Թիւ 4/35ա.- Հատուածին երկրորդ կէսը կը բովանդակէ > : Առաջին կէսին ձախ ձեռքը այսպէս է.



Ի դէպ, թիւ 3/12ա-ին մէջ, առաջին ձայնանիշը նախ գրուած է *ռէ* (թիւ 4-ին նման), յետոյ սրբուած ու վերածուած է *սոլի* (տե՛ս Contrabasso -ին նուագամասը):

**Հատուած 91. Piano.**
Թիւ 4/35ա.- Նշուած է *riten.* : Հատուածի երկրորդ կէսի աջ ձեռքը այսպէս է.



**Հատուածներ 92-104. Piano.**
Թիւ 4/35ա-36.- Գրուած են այսպէս.




**Հատուած 92.**
Թիւ 4/35ա.- Knel. Ձայնանիշին տեւողութիւնը ութերորդական է՝

tier...

Valinace. *declamato a piacere* նշումը չկայ:

**Հատուած 95. Valinace.**
Թիւ 4/35ա.- Կշռոյթի տարբերութիւն մը կայ՝




**Հատուած 97. Valinace.**
Թիւ 4/35ա.- Կշռոյթի տարբերութիւն մը կայ՝




**Հատուածներ 103-104. Valinace.**
Թիւ 4/36.- *Լան* կը կրէ չեշտ եւ տեւողութեամբ աւելի երկար է՝




**Հատուածներ 106, 108, 110, 112. Piano.**
Թիւ 4/37.- Բոլորն ալ միանման են եւ գրուած են ճիշտ Հատուած 105-ին նման:

**Հատուածներ 107, 111. Piano.**
Թիւ 4/37.- Ձախ ձեռքի առաջին *սի*ն գրուած է ութեակով՝



**Հատուածներ 113-116. Piano.**
Թիւ 4/37-37ա.- Գրուած է այսպէս.



**Հատած 121.**

Թիւ 4/37ա.- Knel, Valinace. Շեշտ չունին:

Piano. Երանգանիշ չկայ:

**Հատած 123. Piano.**

Թիւ 4/37ա.- Նշանակուած է < :

Ձախ ձեռքն այսպէս է.



**Հատած 124.**

Թիւ 4/37ա.- Knel, Valinace. Տեւողութեան տարբերութիւն մը՝




Piano. Նշանակուած է > :

**Հատած 126. Valinace.**

Թիւ 4/38.- Տեւողութեան տարբերութիւն մը՝




**Հատածներ 131-143. Piano.**

Թիւ 4/38-38ա.- Ցօրինումի, ձայնակապումի եւ երանգանիշերու տարբերութիւններ՝




**Հատածներ 140-142.**

Թիւ 4/38ա.- Knel, Valinace. Կշռոյթի եւ շեշտի տարբերութիւններ կան՝




Coro. Արտասանական հատուածը չկայ:

**Հատած 144. Piano.**

Թիւ 4/38ա.- Աջ ձեռքը այսպէս է.



**Հատած 146. Piano.**

Թիւ 4/39.- Ձախ ձեռքը այսպէս է.



**Հատածներ 148-149. Piano.**

Թիւ 4/39.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



Աջ ձեռքը ամբողջ սթաքքաթօ է:

**Հատած 151. Coro.**

Թիւ 4/39.- Ութերորդականի փոխարէն՝ քառորդ.




**Հատած 152. Piano.**

Թիւ 4/39.- *f* - ին փոխարէն՝ *sf* :

**Հատած 153. Piano.**

Թիւ 4/39.- Գրուած է այսպէս.





**Հատուած 154.**

Թիւ 4/39.- Knel, Valinace, Coro. *allarg.*-ին փոխարէն՝ ***ff** e pesante.*

Piano. ***ff** allarg.*-ին փոխարէն՝ ***ff** col canto.*

**Հատուած 155. Piano.**

Թիւ 4/39.- Երանգանիշ չկայ:

**Հատուած 157. Piano.**

Թիւ 4/39.- Գրուած է այսպէս.




**Հատուածներ 159-163. Piano.**

Թիւ 4/39ա.- Գրուած են այսպէս.







**Հատուածներ 167-168. Piano.**

Թիւ 4/40.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 171. Piano.**

Թիւ 4/40.- Ձախ ձեռքի ձայնանիշը՝ ութերորդական. ♪𝄾:

**Հատուածներ 171-173. Piano.**

Թիւ 4/40.- Ոչ մէկ երանգանիշ կայ:

**Հատուած 175. Knel, Valinace.**

Թիւ 4/40.- Ձայնանիշերը՝ ութերորդական. ♪𝄾 :

**Հատուածներ 177, 179-180. Piano.**

Թիւ 4/40ա.- Բացի մանր տարբերութիւններէ, նման են հատուածներ 157 եւ 159-160-ին (տե՛ս վերջիններուն ծանօթագրութիւնները):

**Հատուածներ 181-182. Piano.**

Թիւ 4/40ա.- Երանգանիշեր չկան:

**Հատուածներ 182-191. Piano.**

Թիւ 4/40ա-41.- Գրուած է այսպէս.




**Հատուածներ 192-195. Piano.**

Թիւ 4/41.- Աջ ձեռքը ոչ մէկ նախահարուկ կը բովանդակէ:

**Հատուած 195. Piano.**

Թիւ 4/41.- Ձախ ձեռքը այսպէս է.



**Հատուածներ 199-210. Piano.**

Թիւ 4/41ա-42ա.- Գրուած է այսպէս.

199 *p* *sf*

203 *p cresc.* *p* *ff col canto* 8va

207 8va

**Հատած 211. Piano.**
Թիւ 4/42ա.- *p*-ին փոխարէն՝ *crescendo* :

**Հատած 212. Piano.**
Թիւ 4/42ա.- Աջ ձեռքի ութեակներով *լա*երուն փոխարէն՝




**Հատած 213. Piano.**
Թիւ 4/43.- Երանգանիշ չկայ: Աջ ձեռքի երրորդ քառորդին կշռոյթը՝



**Հատած 214. Piano.**
Թիւ 4/43.- Աջ ձեռքի ութեակներով *սի*երուն փոխարէն՝




**Հատած 215. Piano.**
Թիւ 4/43.- Երանգանիշ չկայ:

**Հատած 216. Piano.**
Թիւ 4/43.- *ff* -ին փոխարէն՝ *sf* :

**Հատած 217.**
Թիւ 4/43.- Coro. Երկրորդ քառորդին կշռոյթը՝ glia,

Piano. Ձախ ձեռքի վերջին ութերորդականը՝



**Հատած 219. Piano.**
Թիւ 4/43ա.- Նշանակուած է < : Ձախ ձեռքի վերջին երկու ութերորդականները գրուած են մի-*տօ*՝ փոխանակ *լա-մի*ի.



**Հատած 220. Piano.**
Թիւ 4/43ա.- Առաջին քառորդը կը բովանդակէ > :

**Հատածներ 222-224. Piano.**
Թիւ 4/43ա.- Մինչեւ Հատած 224-ին առաջին ութերորդականը, աջ ձեռքը նշանակուած է նուագել ութեակ բարձր:
Հատած 222-ին սկիզբը՝ *ff* :

**Հատած 227. Piano.**
Թիւ 4/44.- Հատած 219-ին նման՝ ձախ ձեռքը գրուած է *մի-տօ*:

**Հատած 228. Piano.**
Թիւ 4/44.- Առաջին քառորդը կը բովանդակէ > :

**Հատածներ 230-232. Piano.**
Թիւ 4/44-44ա.- Հատածներ 222-224-ին նման, աջ ձեռքը նշանակուած է նուագել ութեակ բարձր:

**Հատած 232. Piano.**
Թիւ 4/44ա.- Նշանակուած է > :

**Հատած 233. Piano.**
Թիւ 4/44ա.- Նշանակուած է < :

**Հատածներ 234-240. Piano.**
Թիւ 4/44ա-45.- Գրուած է այսպէս.

234 *p* 8va *ff*

236 8va *p* 8va




**Հատած 244. Piano.**

Թիւ 4/45ա.- 𝄐 -ին փոխարէն նշուած է *ritenuto col canto* :

**Հատածներ 245-252. Piano.**

Թիւ 4/45ա.- Գրուած է այսպէս.




**Հատած 253. Piano.**

Թիւ 4/45ա.- Նշանակուած է > :

**Հատած 255. Piano.**

Թիւ 4/46.- Ձախ ձեռքի առաջին *ֆան*՝ ութեակ բարձր.



**Հատած 256. Piano.**

Թիւ 4/46.- Աջ ձեռքը այսպէս է.



**Հատածներ 257-258. Piano.**

Թիւ 4/46.- Ձախ ձեռքը՝ ութեակ վար, կը կրկնապատկէ աջ ձեռքը՝



**Հատած 259. Piano.**

Թիւ 4/46.- Նշանակուած է *fff* :

**Հատած 262-263. Piano.**

Թիւ 4/46.- Ձախ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատածներ 266-267. Piano.**

Թիւ 4/46.- Հատած 266-ի տասնվեցերորդական եւ հատած 267-ի քառորդ տեւողութեամբ դաշնեակները, աջ ձեռքը կը նուագէ մէկ ութեակ, իսկ ձախը՝ երկու ութեակ բարձր:

**Հատածներ 269-270. Piano.**

Թիւ 4/46.- Ձախ ձեռքի թրեմոլոները՝ երեսուներկուերորդական:

**Հատածներ 269-271. Piano.**

Թիւ 4/46.- Մինչեւ հատած 271-ի առաջին ութերորդականը նշանակուած է > : Հատած 271-ի վերջին դաշնեակին համար նշուած է *fff* :

# ATTO QUARTO

## No.10. Preludio e Scena

**Հատածներ 1-101**

Թիւ 4/47-48ա.- Երաժշտական բովանդակութիւնը բոլորովին տարբեր է: Այս հատուածին համար, էջ 47-ի վրը, հայերէն լեզուով Չուհաճեան գրած է՝ «Մինչեւ սոյն նշանը 𝄌 պէտք է փոխել բիանո եւ չանը օրքէսթրասեօնին հետ համաձայնեցնելու համար»: Ստորեւ, ամբողջութեամբ կը մէջբերենք Թիւ 4-ի այս հատուածը.



8va

8va

rit.

rall. poco a poco

pp

morendo

**Recitativo**

OLIMPIA

Co-me m'i-neb-bria l'al-ma de' scor-se di la dolce ri-mem-bran-za! Deh! la-scia-mi so-

**Recitativo**

O. gna-re pria di mo-ri-re per-do-nar de-si-o.

p

p

Ինչպէս կ'երեւի, Թիւ 4-ը կազմուած է նախանուագէ մը (39 հատած), որուն վերջաւորութեան յանգաձեւ մը կ'առաջնորդէ դէպի քնարական, մեղեդային, արտայայտիչ մաս մը, որ կ'երկարի մինչեւ Օլիմբիային ասերգը: Թիւ 3-ին նոյն հատուածը, որ ամբողջութեամբ բաղկացած է մատիտագիր էջերէ, ունի եռամասանի կառուցուածք, որուն ծայրագոյն մասերը (հատածներ 1-38, 63-93) հիմնուած են յամառօրէն կրկնուող սոփրանոյի ձայնառական ենթադասոյթին վրայ, որուն կ'ուղեկցի բամբերու ներքընթաց, խորհրդաւոր քայլերը: Ծայրագոյն մասերը՝ բացի հատածներ 73-74-էն, ամբողջութեամբ չարադրուած են հնգաչար ձայնակայքի վրայ: Իսկ միջին մասը (հատածներ 39-62)՝ նրբաթափանց միջնանուագ մըն է:

Կը կարծենք, որ Թիւ 4-ի գեղեցիկ տարբերակէն հրաժարումին պատճառը այն է՝ որ քանի մը հատած ետք կը գտնուի նուագախումբի նոյնքան քնարաշունչ ու երգային նուագ մը՝ Օլիմբիայի «տեսիլ»-ը: Նոյն տեսարանին մէջ, յաջորդաբար երկու ոճականօրէն միանման մասերու գոյութիւնը կը նուազեցնէ անոնց ներգործութիւնը, որով Զուհաճեան կը հրաժարի գրական բնագիրին տեսանկիւնէն նուազ կարեւոր երաժշտական մասէն, զայն փոխարինելով աւելի պարզ, զգաստ եւ երկրորդէն տարբեր արտայատչամիջոցներու վրայ հիմնուած նախանուագով մը: Այսպէս, Օլիմբիայի «տեսիլ»-ը, որուն հիմնանիւթը քաղուած է Բ. արարի Վաղինակի արիայէն («Fanciulla ancor»), կ'առանձնանայ իր բիւրեղեայ հնչողութեան եւ խորաթափանց յուզականութեան ողջ հզօրութեամբ:

**Հատած 105. Olimpia.**

Թիւ 4/48ա.- Վերջին քառորդը կը կրէ ձայնահատ.




**Հատածներ 106-108. Piano.**

Թիւ 4/48ա-49.- Ձայնակապումն այսպէս է.






**Հատածներ 109-112. Piano.**

Թիւ 4/49.- Կը բացակային ընթացքի նշումը, սթաքքաթոները եւ ⟩ :

**Հատած 113. Piano.**

Թիւ 4/49.- Հատածին առաջին կէսը գրուած է այսպէս.




**Հատածներ 116-177. Piano.**

Թիւ 4/49-50.- Գրուած է այսպէս.



Ինչպէս կարելի է նկատել՝ Հատածներ 116-126-ի մէջ տարբերութիւնները փոքր են: Հատածներ 127-135-ին մէջ անոնք աւելի կը խորանան: Այստեղ, Թիւ 3/Ժ. պրակ, No. 10, էջ 10-10ա-ին մէջ սրբագրութիւնները կատարուած են Հինին վրայ՝ նախնականը ռետինով ջնջելով կամ մատիտա-գիր յաւելագրութիւններ կատարելով: Հատածներ 136-153-ը բոլորովին տարբեր են իրարմէ եւ կը կազմեն Թիւ 3-ի մատիտագիր էջերը (Թիւ 3/Ժ. պրակ, No.10, էջ 11-12ա): Անոնք արդիւնքն ու արձագանգն են Հատածներ 1-101-ի նոր խմբագրութեան: Հատածներ 154-172-ը Թիւ 3-ին մէջ (Ժ. պրակ, No.10, էջ 12-13ա) մատիտագիր էջերուն շարունակութիւնն են եւ Համեմատաբար մօտ են Թիւ 4-ին, որով Թիւ 3-ին մէջ սրբագրութիւնները Հիմնականին մէջ եղած ըլլալու են գործիքաւորումի տեսանկիւնէն:

Նկատելի է, որ Թիւ 4/49-49ա-ի Հատածներ 117-118, 120-126-ին մէջ, ձախ ձեռքի մէջտեղի *տօ*երը բոլորն ալ նախապէս գրուած են եւ յետոյ ռետինով ջնջուած: Զանոնք սրբագրելու ոչ մէկ միտում կը գտնուի Թիւ 3-ին մէջ: Թիւ 4-ի յետագայ շարադրանքին մէջ եւս կը գտնուին ջնջուած ու սրբագրուած ձայնանիշեր, որոնց երկրորդ տարբերակը արտացոլուած չէ Թիւ 3-ին մէջ: Ասիկա, այնուամենայնիւ, Թիւ 3-ին եւ 4-ին միջեւ վերոյիշեալ յարաբերութիւնը ոչ մէկ կասկածի կ'ենթարկէ: Չուհաճեան պարզապէս Թիւ 4-ին վրայ նշումներ եւ ուղղումներ արձանագրած է, որոնք չեն Հասունցած Հաստատագրելու մայր ձեռագիրին՝ Թիւ 3-ին մէջ:

**Հատած 182. Olimpia.**

Թիւ 4/50.- Նախապէս գրուած է գրեթէ Թիւ 3-ին նման, յետոյ սրբագրուած է այսպէս.




**Հատածներ 183-186. Piano.**

Թիւ 4/50-50ա.- Ոչ մէկ սթաքքաթօ եւ > կը գտնուի:

**Հատածներ 187-188. Polissena.**

Թիւ 4/50ա.- Նախապէս գրուած է Թիւ 3-ին նման, յետոյ սրբագրուած այսպէս.




**Հատած 188. Piano.**

Թիւ 4/50ա.- Աջ ձեռքը գրուած է՝



**Հատածներ 193-194. Olimpia.**

Թիւ 4/50ա.- Նախապէս գրուած է Թիւ 3-ին նման, յետոյ փոխուած այսպէս.




**Հատածներ 195-199. Piano.**

Թիւ 4/50ա-51.- Բաւական նման է Հատածներ 118-127-ին:

## No. 11. QUARTETTO

Թիւ 4/47-ին մէջ այս տեսարանը խորագրուած է՝ Scena, Duetto e Coro

**Հատած 202.**

Թիւ 4/15.- Ընթացքին նշումն է՝ **Andante moderato :**

**Հատածներ 203-205. Piano.**

Թիւ 4/51.- Գրուած է այսպէս.





**Հատած 206. Vartan.**

Թիւ 4/51.- Գրուած է այսպէս.




**Հատած 207. Piano.**

Թիւ 4/51.- Գրուած է այսպէս.



**Հատած 209. Vartan.**

Թիւ 4/51ա.- Գրուած է այսպէս.




**Հատած 212. Piano.**

Թիւ 4/51ա.- Գրուած է այսպէս.



**Հատածներ 215-216. Vartan, Piano.**

Թիւ 4/51ա.- Հատած 215-ի երկրորդ կէսէն գրուած են այսպէս.




**Հատածներ 216-218. Olimpia, Piano.**

Թիւ 4/51ա-ին մէջ Նախապէս գրուած է.

O. Ch'i-o gli per-do-no, gli per-do-no e muo - io.

adagio pp

Ասոր վրայ կատարուած են ոչ ամբողջական սրբագրութեան նշումներ՝ որոնք գրութիւնը կը մօտեցնեն Թիւ 3-ին: Ի դէպ, Թիւ 3/No.11, էջ 19-ին մէջ քանի մը նուագարանի վրայ կպցուած են թերթիկներ՝ երաժշտական նոր շարադրանքով: Ուրեմն, Թիւ 3-ի սկզբնականը եղած է Թիւ 4-ին նման:

**Հատածներ 220-222. Olimpia, Piano.**
Թիւ 4/51ա-52.- Սկզբնականը եղած է գրեթէ Հատածներ 216-218-ին նման: Սրբագրութիւններ կատարուած են միայն Olimpia -ի դերամասին մէջ:

**Հատած 224. Arsace.**
Թիւ 4/52.- Երկրորդ ձայնանիշը *սոլ*-ի փոխարէն *լա* է:

**Հատած 225. Arsace, Piano.**
Թիւ 4/25.- Կը կրեն՝ *rallen.* :
Arsace-ի դերամասը նախ գրուած է՝

suo - no!

յետոյ սրբագրուած՝

suo - no

**Հատածներ 226-250. Piano.**
Թիւ 4/52-53.- Կան ոչ մեծ տարբերութիւններ.

226

p

231

235

239

p col canto

243

247

rall.

**Հատուած 231. Arsace.**

Թիւ 4/52.- Հատածի չորրորդ քառորդի *լային* փոխարէն գրուած է *ֆա*՝ նուագակցութեան նման.




**Հատուած 237. Arsace.**

Թիւ 4/52ա.- Առաջին քառորդին կչռոյթը տարբեր է՝ նման նուագակցութեան.




**Հատուած 240. Arsace.**

Թիւ 4/52ա.- Ընտրողաբար գրուած է բարձր եւ ցած տարբերակներ.




**Հատուածներ 248-249. Arsace.**

Թիւ 4/53.- Գրուած է այսպէս.




Թիւ 3-ը նախ եղած է Թիւ 4-ին նման, յետոյ սրբագրուած:

**Հատուածներ 251-258. Piano.**

Թիւ 4/53-54.- Իւրաքանչիւր հատածի առաջին կէսի աջ ձեռքի կչռոյթը այսպէս է.



եւ այլն

**Հատուածներ 251, 255. Piano.**

Թիւ 4/53.- Վերջին քառորդի դաշնեակը $D_7$ է փոխանակ D-ի:

**Հատուածներ 255-257. Piano.**

Թիւ 4/53ա-54.-Կան մանր տարբերութիւններ.




Հատուածներ 256-257-ը Թիւ 3-ին մէջ նախապէս եղած են Թիւ 4-ին նման, յետոյ սրբագրուած:

**Հատուած 258. Piano.**

Թիւ 4/54.- Աջ ձեռքը գրուած է այսպէս.



**Հատուած 259. Olimpia.**

Թիւ 4/54.- Կչռոյթի տարբերութիւն կայ.




**Հատուած 261. Olimpia.**

Թիւ 4/54.- Կչռոյթի տարբերութիւն կայ.




**Հատուածներ 263-265. Olimpia, Arsace.**

Թիւ 4/54ա.- Կչռոյթի տարբերութիւններ կան.




**Հատուած 266. Olimpia.**

Թիւ 4/54ա.- Գրուած է այսպէս.




**Հատուած 271. Piano.**

Թիւ 4/55ա.- Աջ ձեռքը այսպէս է.



**Հատուած 273. Olimpia, Arsace.**

Թիւ 4/55ա.- Երկրորդ ձայնանիշը ութերորդականի փոխարէն քառորդ է:

**Հատուած 274.**

Թիւ 4/55ա.- Olimpia. Երկրորդ քառորդին մէջ կչռոյթի տարբերութիւն կայ՝




Piano. Հատածի երկրորդ կէսէն նշուած է նաեւ *dim.* :

**Հատուած 275. Piano.**

Թիւ 4/55ա.- Կը բովանդակէ *a tempo,* զոր փոխանցեցինք Թիւ 3-ին:

**Հատուածներ 276, 278. Piano.**

Թիւ 4/55ա.- Հատուածներուն երկրորդ կէսը կը կրէ > :

**Հատուած 277. Piano.**

Թիւ 4/55ա.- Գրուած է այսպէս.




**Հատուածներ 283-298.**

Անոնք նոյնութեամբ կրկնութիւնը ըլլալով Հատուածներ 251-266-ին, Թէ՛ Թիւ 4/56-57-ին եւ Թէ՛ Թիւ 3/No.11, էջ 27ա-29-ին մէջ նուագախումբի դերամասերը գրուած չեն այլ Թուանշաններով նշանակուած անոնց կրկնութիւնը: Երկուքին մէջ, սակայն, ամբողջութեամբ չարադրուած է երգչախումբը: Թիւ 3-ին մէջ այս Հատուածները նախորդներուն նման են: Թիւ 4-ին մէջ անոնք նման են Թիւ 3-ին, բացի Արշակի Հատուած 287-էն՝ որ մնացած է հին տարբերակով (հմմտ.՝ Հատուած 255-ին հետ):

**Հատուածներ 301-302, 305-306. Piano.**

Թիւ 4/57ա, 58.- Գրուած են այսպէս.



**Հատուած 306. Soprani.**

Թիւ 4/58.- Հատուածի երկրորդ կէսը գրուած է այսպէս.




**Հատուածներ 307-311.**

Թիւ 4/58-58ա.- Գրուած է այսպէս.

O. tà, sì de - gno, de - gno di pie - tà.

POL. tor! sì tra - di - tor! sì tra - di - tor!

A. mor, l'a - mor, l'a - mor.

VAR. tor! sì tra - di - tor! sì tra - di - tor!

tor! sì tra - di - tor! sì tra - di - tor!

8va

ff

# ԼԻՊՐԵԹԹՕ

ԺԻՐԱՅՐ ԲԱԲԱԶԵԱՆ

Տիգրան Չուհաճեանի «Արշակ Բ.» օփերայի լիպրեթթոյին հրատարակութիւնը հիմնուած է երկու գլխաւոր աղբիւրներու վրայ.

Ա.- Չուհաճեանի ձեռագիր նուագագրութիւնը (partition d'orchestre), որ կը պահուի Երեւանի «Չարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Չուհաճեանի դիւանին մէջ, թիւ 3: Այստեղ, ձայնանիշերուն ներքեւ բառերը գրուած են միայն իտալերէն լեզուով:

Ձեռագրին նկարագրականը տե՛ս էջ 365:

Բ.- Լիպրեթթիսթ Թովմաս Թէրզեանի՝ 1871-ին, Կ. Պոլսոյ մէջ տպագրած երկլեզուեան (իտալերէն-հայերէն) լիպրեթթոյի առանձին գրքոյկը: Թէրզեան բնագիրը նախ գրած է իտալերէն եւ ապա զայն թարգմանած է հայերէնի: Տիտղոսաթերթը նոյնպէս երկլեզուեան է: Հայերէն լեզուով գրուած է *Արշակ Բ., Թատերանուագ ի չորս հանդէսս, քերթուած Թովմաս Ռ. Թէրզեանի, երաժշտութիւն Չուխաճեան Տիգրանայ:* Իսկ իտալերէն տիտղոսաթերթին այսպէս է. Arsace II, tragedia lirica in IV atti, poesia di Tommaso R. Tersian, musica del maestro T. Dicran.: Թէրզեան միայն հայերէն լեզուով գրած է «Ազդ» մը, որ անուղղակիօրէն կը յայտնաբերէ Թէրզեանին, իր ունակութիւններուն, լիպրեթթիսթին եւ երաժշտահանին միջեւ աստիճանաբար զարգացած ստեղծագործական փոխյարաբերութիւններուն մասին: Իր կարեւորութեան համար՝ ստորեւ ամբողջութեամբ կը վերատպենք «Ազդ»-ը.

«Առաջիկայ թատերանուագիս նիւթը Ոլոմպիադայ մահն է, եւ բաց 'ի սակաւաթիւ քերթողական զարդերէ՝ պատմական աւանդութեանց հաւատարիմ հետեւութիւն մը: Երկրորդէն մինչեւ երրորդ Արարուածը երկու տարուան միջոց մը ենթադրելու է՝ Փառանձեմայ բնաւորութեան փոփոխուիլը մեկնելու համար:

«Խաղը բուն իսկ Իտալերէն գրած ըլլալովս բաւական դժուարաւ եղած են թարգմանութեան այն տեղուանքն ուր հարկ էր՝ երգին համար՝ Իտալերէն ոտանաւորը նոյնաչափ 'ի Հայ փոխել: Արտասանելի (recitativo) տողերը արձակ թարգմանեցի: - Գալով խաղիս ընդհանուր հիւսուածքին՝ բանասիրաց ծանօթ է թէ որչափ տաժանելի է երգի առնուելու թատրերգութիւն մը գրելը: Նուագահանին քմաց եւ արհեստին համեմատ՝ ամեն օր խաղին այս կամ այն ինչ մասը յօշոտելու՝ այլափոխելու՝ աւելցնելու կամ յապաւելու է: Եթէ այսչափ դժուարութեանց մասամբ յաղթել կրցայ՝ Մեծ. Հէքիմեան Սրապիոն էֆէնտիին շնորհիւն է. իսկ մնացեալ թերութեանց համար՝ ընթերցողաց ներողամտութիւնը կը խնդրեմ:»

«Արշակ Բ.» օփերայի առաջին ամբողջական հրատարակութեան առիթով՝ երաժշտական խմբագրական աշխատանքներուն կողքին, հարկաւոր էր ուսումնասիրել ու խմբագրել լիպրեթթոյի լեզուական ու թատերական կառոյցին վերաբերեալ բազմաթիւ հարցեր: Անհրաժեշտ նկատեցինք կատարել որոշ փոփոխութիւններ, վերականգնել թերի մնացած հատուածներ եւ առաջարկել յաւելումներ ու թատերական լուծումներ: Հաւատարիմ մնալու համար բնագրին, մեր կողմէ կատարուած բոլոր առաջարկութիւններն ու լրացումները նշած ենք ուղղանկիւն փակագիծերու մէջ եւ մեծ մասամբ բացատրած ծանօթագրութիւններուն մէջ: Որոշ յաւելումներ՝ որոնք ինքն ըստ ինքեան հասկնալի են, աւելորդ համարեցինք մանրամասնել ծանօթագրութիւններուն մէջ:

Իսկ ինչո՞ւ հարկ էր կատարել այս խմբագրումները:

Հարցը այն է՝ որ 1868-ին աւարտած Չուհաճեանի նուագագրութեան բառերուն ու 1871-ին տպագրուած Թէրզեանի լիպրեթթոյին միջեւ կան տարբերութիւններ: Ընդհանրապէս, Թէրզեանի լիպրեթթոն շատ աւելի երկար է քան Չուհաճեանի օփերան եւ կը բովանդակէ ամբողջական տեսարաններ՝ զորս զանց ըրած է Չուհաճեան իր ստեղծագործութեան մէջ: Բաց աստի, նուագագրութեան Դ. արարի Բ. տեսարանը (այսինքն՝ օփերային աւարտը) գրեթէ ամբողջովին տարբեր է Թէրզեանի տպագրութենէն եւ կը ներփակէ բազմաթիւ երգամասեր՝ որոնց բառերուն ոճական տարբերութիւնը Թէրզեանէն[1] ենթադրել կու տայ, որ անոնք Թէրզեանի գրչին չեն պատկանիր: Ի վերջոյ, նուագագրութեան մէջ կան երկու ամբողջական հատուածներ՝ ուր երգային բաժնին բառերը չեն գրուած: Անոնցմէ առաջինին (Ա. արարի Բ. տեսարանի Փառանձեմի արիան) ամբողջական բանաստեղծութիւնը թէեւ կը գտնուի Թէրզեանի գրքոյկին մէջ, սակայն չի համապատասխաներ Չուհաճեանի նուագագրութեան եւ անկարելի է համատեղել երաժշտութեան հետ: Իսկ երկրորդին (Դ. արարի Բ. տեսարանի Quartettino-ն) համապատասխանող բառերը ընդհանրապէս չկան Թէրզեանի գրքոյկին մէջ:

Այս բոլորը կը նշանակէ՝ թէ երաժշտութեան յօրինման ընթացքին Չուհաճեան կարիք զգացած է լիպրեթթոյի խմբագրութեան՝ որուն մէկ մասը իր թելադրանքով կատարած է Թէրզեան (տե՛ս Թէրզեանին «Ազդ»-ը), միւս մասը իրագործած է ինք[2]:

1.- Լեզուաոճական այս հարցը մեր ուշադրութեան յանձնեց սոյն հատորին իտալերէն լեզուի խմբագիր, Մոնփըլիէ 3-ի Փօլ Վալերի համալսարանի իտալական գրականութեան դասախօս, փրոֆ. Փասքալ Կապելլոնէ:

2.- Առ այսօր, մեր բանասիրութիւնը ուշադրութիւն չէ դարձուցած երկու լիպրեթթոներու գոյութեան մասին: «Արշակ Բ.»-ի լիպրեթթոյի բովանդակութեան մասին կատարուած ուսումնասիրութիւնները մեքենաբար հիմնուած են Թէրզեանի տարբերակին վրայ: Այս վրիպումը հասկնալի է՝ որովհետեւ, օփերայի մը լիպրեթթոն ընդունուած է հրատարակել՝ երաժշտահանին փոփոխութիւնները, կրճատումները եւ յաւելումները նկատի առնելով եւ ոչ թէ ինչպէս լիպրեթթիսթը հեղինակած է զայն *նախքան* երաժշտութեան յօրինումը: Ի հարկ է, օփերայի բովանդակութեան ծանօթանալու համար աւելի դիւրին էր Թէրզեանին գրքոյկը ելակէտ համարել, մանաւանդ որ իտալերէնի կողքին կար նաեւ անոր հայերէն թարգմանութիւնը: Մինչդեռ նուագագրութեան բնագիրը միայն իտալերէն լեզուով գրուած էր: Այսպէս, բանասիրութեան էջերուն մէջ նկարագրուած են տեսարաններ՝ որոնք չկան վերջնական ստեղծագործութեան մէջ, ինչպէս՝ Արշակի եւ Փառանձեմի սպանութիւնը, որ կը գտնուի Թէրզեանի գրքոյկին մէջ եւ կը բացակայի Չուհաճեանի ձեռագրին մէջ:

Այս վերափոխութիւններուն որպէս արդիւնք՝ յառաջացած են որոշ թատերական բացթողումներ, որոնք, սակայն, նուագագրութեան մէջ չեն գտած իրենց վերջնական լուծումները: Ասիկա կը նշանակէ՝ որ Թէրզեան մինչեւ վերջ չէ համագործակցած Չուհաճեանին հետ: Պատճառը անյայտ է: Ըստ մեզի, այստեղ դեր խաղացած են գեղարուեստական հանգամանքներ, որոնց գաղտնիքի բանալին պէտք է փնտռել Չուհաճեանի եւ Թէրզեանի ստեղծագործական ընթացքին եւ փոխյարաբերութեան մէջ:

Փորձենք բացատրել: Պէտք է ենթադրել՝ որ Թէրզեան 60-ական թուականներուն սկիզբը հեղինակած է «Արշակ Բ.»-ի իտալերէն լիպրեթթոն, որուն հիման վրայ Չուհաճեան սկսած է աշխատանքի[1]: Թէրզեան՝ իր լեզուներու ծանօթութեամբ, բանաստեղծի համբաւով եւ արդէն իսկ թատերախաղեր գրած ու յաջողապէս ներկայացուցած ըլլալու փորձառութեամբ, լաւագոյն մտաւորականն էր այս լիպրեթթոն ստեղծելու համար: Սակայն ինչպէս կը բացատրէ վերոյիշեալ «Ազդ»-ին մէջ, Թէրզեանին համար լիպրեթթօ գրելը նորութիւն մըն էր: Թէրզեանի լիպրեթթոն չափազանց երկար է ամբողջապէս երաժշտութեան վերածուելու համար: Այս առումով, Չուհաճեան իրաւացի էր կրճատումներ պահանջելու: Իբրեւ երաժիշտ՝ Չուհաճեան աւելի լաւ զգացած է լիպրեթթոյին ծաւալը: Ճշտենք նաեւ, որ «Ազդ»-ին բովանդակութիւնը յստակօրէն ցոյց կու տայ՝ թէ Թէրզեան ըժգոհ աչքով դիտած է իր գրութեան կրճատումներն ու փոփոխութիւնները: Պատահական չէ «յօշոտել» բառին օգտագործումը: Իբրեւ արդիւնք այս բոլորին, Թէրզեան հետզհետէ հեռացած ըլլալու է Չուհաճեանէն, թողելով որ երաժշտահանը անձամբ տնօրինէ ցանկացած փոփոխութիւնները: Արդեօք ա՞յս է պատճառը՝ որ նուագագրութեան աւարտէն (1868) երեք տարի ետք՝ 1871-ին, Թէրզեան տպագրած է ի՛ր լիպրեթթոն՝ այնպէս ինչպէս սկզբնապէս յօրինած էր, անտեսելով Չուհաճեանին փոփոխութիւնները:

Անկասկած, Չուհաճեան բացառիկ կարողութիւն ունէր ստեղծելու հոգեբանական իրավիճակներու երաժշտական վարպետ լուծումներ: Սակայն ըլլալով երաժիշտ, իր բեմական ստեղծագործութիւններուն մէջ միշտ չէ որ թատերական կառուցուածքային տրամաբանական անցումները ստացած են առաջնահերթ նշանակութիւն: Այսպէս, Չուհաճեանին ճակատագիրը կը նոյնանայ բազմաթիւ մեծահռչակ այլ երաժշտահաններու հետ՝ որոնց գործերը մինչեւ այսօր լայն ժողովրդականութիւն կը վայելեն ոչ այնքան լիպրեթթոներուն՝ որքան իրենց հոյակապ երաժշտութեան շնորհիւ:

Պատմական տեսանկիւնէն, նուագագրութեան մէջ առկայ թատերական թերիները կու գան ապացուցանել՝ որ «Արշակ Բ.»-ը երբեք չէ բեմադրուած հեղինակին կենդանութեան, այլապէս, բեմական գործնական փորձերէն եկելով՝ թատերական բնոյթի վրիպակները տրամաբանօրէն լուծուած եւ արտացոլուած պէտք է ըլլային նուագագրութեան մէջ: Ասիկա մասամբ կը լրացնէ պատմագրութեան այն բացը՝ որ փաստերու պակասին պատճառով տակաւին չէ կրցած հաստատապէս որոշել, թէ արդեօք 1860-70-ական թուականներուն օփերան բեմադրուած է Պոլսոյ մէջ թէ ոչ[2]:

Օփերայի թատերական կառոյցին մէջ յառաջացած վերոյիշեալ անհարթութիւններուն նկատմամբ հարկաւոր էր որդեգրել յստակ մօտեցում մը: Որոշեցինք իրականացնել ոչ միայն բնագրին հարազատ վերարտադրութիւնը, այլեւ առաջարկել կառուցուածքային թերութիւններու լուծումներ, որպէսզի աքատեմիք հետաքրքրութենէ անդին՝ հնարաւորութիւն ընձեռնըւի գործնականօրէն բեմադրել օփերան: Սակայն, մեր առաջարկած «փոփոխութիւններ»-ը գեղարուեստական նպատակներ չեն հետապնդեր, եւ կատարուած են մեծ զգուշութեամբ՝ չղաւաճանելու համար բնագրին հարազատութիւնը: Ի հաշիւ թատերական խմբագրութիւններուն՝ Չուհաճեանի երաժշտութեան մէջ կատարած ենք ոչ մէկ փոփոխութիւն: Նշենք նաեւ, որ փոփոխութիւնները չեն հետապնդեր սրբագրել լիպրեթթոյի պատմական սայթաքումները:

Խմբագրական աշխատանքները կարելի է ամփոփել հետեւեալ կերպով.

1.- Իտալերէն լեզուական (ուղղագրական եւ քերականական) խմբագրում, որոնք տպագրական կամ ձեռագրական վրիպակներէ զատ, յառաջացած են ԺԹ. դարու եւ ժամանակակից ուղղագրութեան տարբերութիւններէ: Նուագագրութեան գրեթէ բոլոր այն հատուածները, խօսքերն ու բառերը, որոնք ամբողջովին տարբեր են Թէրզեանի հրատարակութենէն, կարիք ունեցան քերականական սրբագրութիւններու, ինչ որ՝ ի բացառեալ անուշադրութեան եւ տպագրական մանր վրիպակներէ, նոյնը կարելի չէ ըսել Թէրզեանի հրատարակած բնագրին մասին: Այս աշխատանքը կատարած է Փասքալ Կապելլոնէ: Թէրզեանի գրքոյկին մէջ կան նաեւ որոշ բառեր եւ նախադասութիւններ՝ որոնք գրուած են իտալերէն

1.- Անկախ այն հանգամանքէն՝ թէ այդ ժամանակաշրջանին բնական երեւոյթ էր օփերայի մը համար իտալերէն լեզուին գործածութիւնը, կը խորհինք՝ որ երկու այլ պատճառներ եւս թելադրած են հեղինակները դիմել իտալերէն լեզուին: Մէկը այն է՝ որ իտալերէն լեզուով ծրագիր մը Պոլսոյ մէջ իրագործելը գործնականօրէն աւելի իրապաշտ կեցուածք մըն էր, քանի որ հայերէն երգող մասնագիտացած երգիչներ չկային, իսկ միւսը կապուած է Չուհաճեանի եւ Թէրզեանի տիեզերական (cosmopolite ) դաստիարակութեան ու ապրելակերպին հետ, ըստ որում սխալ չ'ըլլար կռահել՝ որ իրենց ցանկութիւնը եղած է օփերան դուրս հանել հայկական սահմաններէ եւ յուսալ որ ապրի համաշխարհային կեանք:

2.- Մեր կարծիքով, Պոլսոյ մէջ «Արշակ Բ.» օփերան չէ բեմադրուած ոչ այնքան քաղաքական կացութեան պատճառով, ինչպէս կը նշեն ոմանք, քանի որ 1878 թուականի ռուս-թրքական պատերազմէն ետք՝ Ապտուլ Համիտ Բ.-ի գահակալութեան օրերուն է որ հայութեան վիճակը Պոլսոյ մէջ քաղաքականապէս վատթարացաւ: 1860-70-ական թուականներուն գոյութիւն ունեցող դժուարութիւնները աւելի նիւթական ու գործնական բնոյթ ունէին: 1870-ին Բերա թաղամասին հրդեհը՝ որ բազմաթիւ թատրոններու կողքին հրոյ ճարակ դարձուց օփերայի մը բեմադրութեան ամենայարմար վայրը՝ նշանաւոր «Նաում» թատրոնը, ժամանակաւորապէս ի դերեւ հանեց Չուհաճեանին յոյսերը: Գործնական գետնի վրայ կը պակսէին նաեւ մասնագիտացած երգիչ-երգչուհիները. իսկ նիւթականով այդ հարցերը լուծելու կարելիութիւնները հետզհետէ կը նուազէին՝ Օսմանեան կառավարութեան արտաքին պարտքերուն հետեւանքով յառաջացած տնտեսական տագնապին պատճառով: Չուհաճեանին կը մնար սպասել՝ յուսալով աւելի բարենպաստ պայմաններ, որոնք, սակայն, երբեք պիտի չգային:

բնագրին մէջ եւ կը բացակային հայերէն թարգմանութեան մէջ: Երբեմն ալ կատարուած է հակառակը: Ծանօթագրութիւններուն մէջ նշած ենք այս տարբերութիւնները՝ ըստ անհրաժեշտութեան:

2.- Երկու հատուածներու՝ Փառանձեմի արիայի (Ա. արար, Բ. տեսարան), եւ քառերգիկի (Quartettino) (Դ. արար, Բ. տեսարան), բառերու յօրինում եւ վերականգնում, որոնք նուագագրութեան մէջ կը բացակային:

3.- Բեմական գործողութիւններու յաւելումներ եւ գործող անձերու մեկուսի նախադասութիւններու սահմանումներ:

4.- Որոշ հատուածներու համար մեր կողմէ գրուած նոր բառեր, զորս իտալերէն թարգմանած է Փասքալ Կապելլոնէ, հաւատարիմ մնալով ԺԹ. դարու իտալական ոճին եւ Թովմաս Թէրզեանի բառամթերքին:

Այս բոլոր խմբագրական եւ վերականգնման աշխատանքները մեր սեփական յղացումները չեն, այլ կատարուած են հիմք ու ելակէտ ունենալով Թ. Թէրզեանի սկզբնական տպագրուած լիպրեթթոն: Այս առումով, հակառակ Թէրզեանի գրքոյկին հետ կապուած բոլոր հարցադրումներուն, մեծ բարեբախտութիւն մըն էր ունենալ անոր տպագրութիւնը՝ առանց որուն անկարելի պիտի ըլլար հարազատօրէն ամբողջացնել նուագագրութեան բնագրին որոշ կէտեր:

Վերոյիշեալ խմբագրութիւնները, այնուամենայնիւ, չեն լուծեր լիպրեթթոյի ընդհանուր յղացման հետ կապուած հարցեր, որոնցմէ նշենք հետեւեալները.

ա.- Օփերայի Գ. արարին մէջ կը հաղորդուի՝ թէ Փառանձեմ սպանած է Արշակի եւ Օլիմբիայի զաւակը: Սակայն չի յստակուիր՝ թէ արդեօք Արշակ երբեւէ կը տեղեկանայ ոճիրի հեղինակին՝ Փառանձեմին, մասին: Եթէ ոչ՝ ինչպէս բացատրել Արշակին անտեղեակութիւնը: Եթէ այո, ինչպէս արդարացնել Փառանձեմի ոճիրին հանդէպ Արշակին ունեցած անտարբերութիւնը՝ որով Փառանձեմ ոչ միայն կը մնայ անպատիժ, այլեւ կ'արտօնուի ներկայ գտնուիլ Դ. արարի պարահանդէսին եւ՝ ի տես բոլորին, անկաշկանդօրէն մօտենալ իր յետագայ զոհին՝ Օլիմբիային:

բ.- Բեմադրական հարցադրում մը կ'առաջադրէ Գ. արարի Բ. տեսարանը, ուր երկար երաժշտական հատուած մը՝ ներառեալ Օլիմբիայի գլխաւոր արիաներէն մէկը, ըստ երեւոյթին, կը կատարուի բեմէն դուրս, մինչ բեմին վրայ գտնուողները կը մնան առանց գործողութեան:

գ.- Յստակ չէ նաեւ Դ. արարի Բ. տեսարանին սկիզբը՝ ուր միայն մէկ աքորէ ետք, առանց երաժշտական նախամուտքի, կը սկսի Արշակի երգամասը, առիթ չտալով բանալու վարագոյրը: Չնախապատրաստուած այս մուտքը կ'ենթադրէ բեմադրական-երաժշտական այլազան լուծումներ:

Կը խորհինք, որ այս եւ նմանօրինակ հարցեր դուրս են մեր հետապնդած նպատակներէն եւ կը վերաբերին զուտ բեմադրական աշխատանքին: Նոյնիսկ միջազգային հռչակաւոր օփերաներու մակարդակով անսովոր չեն այսպիսի հարցեր, յատկապէս երբ նկատի առնենք՝ որ առ հասարակ օփերաներու լիպրեթթոները, իրենց այլազան թերութիւններու պատճառով, յաճախ կը կարօտին փորձառու բեմադրիչներու հնարամիտ միջամտութեան:

Երկու խօսք նաեւ Թէրզեանի հայերէն թարգմանութեան մասին: «Այգ»-ին մէջ, Թէրզեան կը նշէ՝ թէ փորձած է որոշ հատուածներ «երգին համար՝ Իտալերէն ոտանաւորը նոյնաչափ 'ի Հայ փոխել»: Դժբախտաբար, ան չէ յաջողած գլուխ հանել իր փափաքը: Ըստ երեւոյթին, Թէրզեան՝ Չուհաճեանի մեղեդիներուն շեշտադրութեան ուշադրութիւն չէ դարձուցած: Իր հայերէն թարգմանութիւնը երգուելու անյարմար է: Միւս կողմէ՝ Թէրզեանի թարգմանութիւնը բառացի ալ չէ: Յաճախ շատ գեղեցիկ՝ բայց համեմատաբար ազատ, բանաստեղծական վերարտադրութիւն մըն է իտալերէն բնագրին: Այնպէս որ, Թէրզեանի ԺԹ. դարու ոճով եւ բանաստեղծական ազատաբանութիւններով լեցուն իտալերէն բնագրին մէջ հանդիպող դժուար հասկնալի որոշ հատուածներ հնարաւոր չեղաւ լուսաբանել հայերէն թարգմանութեան օգնութեամբ:

Ուշադրութեան կը յանձնենք՝ որ Թէրզեանի լիպրեթթոյին իւրաքանչիւր արար բաժնուած է տեսիլներու: Պէտք չէ շփոթել Թէրզեանի տեսիլներու փոփոխութիւնները մեր հրատարակութեան մէջ նշուած տեսարաններու փոփոխութիւններուն հետ: Իսկ Չուհաճեանի նուագագրութեան մէջ տեսարաններու նշումներ ընդհանրապէս կը բացակային: Թէրզեան հետեւած է տեսիլներ նշելու դասական ձեւին, որ կ'ենթադրէ նոր տեսիլ մը նշել ամէն անգամ՝ երբ նոր կերպար մը մուտք գործէ: Մեր հրատարակութեան մէջ սահմանուած տեսարանները կը փոխուին ամէն անգամ՝ երբ պատմութեան վայրն ու ժամանակը կը փոխուի: Ստորեւ կը ներկայացնենք «Արշակ Բ.»-ի տեսիլներուն եւ տեսարաններուն համեմատական ցուցակը՝ ուր յստակ կ'ըլլայ, թէ որ տեսիլները կրճատուած են Չուհաճեանի վերջնական նուագագրութեան մէջ.

| **ԹԷՐԶԵԱՆԻ ԼԻՊՐԵԹԹՈՆ** | **ՉՈՒՀԱՃԵԱՆԻ ՆՈՒԱԳԱԳՐՈՒԹԻՒՆԸ** |
|---|---|
| **Ա. ԱՐԱՐ ATTO I**<br>Տեսիլ Ա. Scena I (կ'աւարտի Չուհաճեանի նուագագրութեան յաջորդ տեսարանի առաջին տասը տողերէն ետք) | **Ա. ԱՐԱՐ ATTO I**<br>Տեսարան Ա. Scena I |
| Տեսիլ Բ. Scena II | Տեսարան Բ. Scena II |
| Տեսիլ Գ. Scena III | Տեսարան Գ. Scena III |

| | |
|---|---|
| **Բ. ԱՐԱՐ ATTO II**<br>Տեսիլ Ա. Scena I<br>Տեսիլ Բ. Scena II<br>Տեսիլ Գ. Scena III<br>Տեսիլ Դ. Scena IV | (Ջնջուած) |
| Տեսիլ Ե. Scena V<br>Տեսիլ Զ. Scena VI<br>Տեսիլ Է. Scena VII | **Բ. ԱՐԱՐ ATTO II** |
| **Գ. ԱՐԱՐ ATTO III**<br>Տեսիլ Ա. Scena I | **Գ. ԱՐԱՐ ATTO III**<br>Տեսարան Ա. Scena I |
| Տեսիլ Բ. Scena II | (Ջնջուած) |
| Տեսիլ Գ. Scena III | Տեսարան Բ. Scena II |
| Տեսիլ Դ. Scena IV | Տեսարան Գ. Scena III |
| **Դ. ԱՐԱՐ ATTO IV**<br>Տեսիլ Ա. Scena I<br>Տեսիլ Բ. Scena II | **Դ. ԱՐԱՐ ATTO IV**<br>Տեսարան Ա. |
| Տեսիլ Գ. Scena III<br>Տեսիլ Դ. Scena IV<br>Տեսիլ Ե. Scena V | Տեսարան Բ. |

Եզրակացնելու համար, մեր պարտքը կը համարենք նշել՝ որ Զուհաճեան եւ Թէրզեան եթէ առիթ ունեցած ըլլային ստեղծագործել բնականոն պայմաններու մէջ եւ մասնագիտացած ուժերով բեմադրել «Արշակ Բ.»-ը, անդրադարձած ու վերախմբագրած պիտի ըլլային վերոյիշեալ բացթողումները: Նորապէս համոզուած ենք՝ որ անոնք, մեր այս համեստ փորձէն շատ աւելի մեծ վարպետութեամբ, գտած ու լուծած ըլլային բոլոր հարցերը:

# ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## Ա.- ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄՆԵՐ

1.- Զուհաճեանի նուագագրութեան մէջ ձայնանիշերուն ներքեւ բառերը չեն գրուած: Արիայի իտալերէն բառերը վերականգնեցինք ըստ Թէրզեանի տպագրուած լիպրեթթոյի համապատասխան բաժնին (էջ 18-19):

Ստորեւ Թէրզեանի բնագիրը՝ այնպէս ինչպէս հրատարակած է.

Fiori olezzanti ed umili
Colti con man tremante,
Piena di speme e gaudio
Spargo a' tuoi piè davante.
Felice me se accoglierli.
Piace, o Signore, a te!

Փունջ խուռներամ խոնարհ ծաղկանց
Դողդոջ մատամբք քաղելով
Ոտիցդ առջեւ ահա սփռեմ
Լի տագնապաւ եւ յուսով.
Իցի՜ւ զանոնք խոնարհէիր
Ընդունելու կարեկիր:

2.- Quartettino կոչուող այս հատուածը եւս Զուհաճեանի ձեռագիր նուագագրութեան մէջ բառեր չի կրեր: Թէրզեանի գրքոյկին մէջ ալ կը բացակայի համապատասխան բաժինը, հետեւաբար ոչ մէկ օգնութիւն կը ցուցաբերէ բառերու վերականգնման համար: Ընդհանրապէս, Թէրզեանի գրքոյկին մէջ այս ամբողջ արարը բաւական տարբեր է նուագագրութենէն: Երաժշտականօրէն՝ Quartettino-ն յստակ շարունակութիւնն ու տրամաբանական եզրափակումն է նախորդող մեղեդիական մոթիֆներուն: Ուստի, մեր առաջարկած իտալերէն նոր բառերը կը հիմնենք գործող անձերու նախորդ նախադասութիւններու իմաստներուն վրայ՝ շարունակելով մօտաւորապէս նոյն իմաստը: Հնարաւորին չափ օգտուեցանք Թէրզեանի բառամթերքէն:

## Բ.- ՑԱՒԵԼՈՒՄՆԵՐ

1.- Թէ՛ Թէրզեանի լիպրեթթոյին եւ թէ՛ Զուհաճեանի նուագագրութեան բեմական գործողութիւններու ցուցմունքներուն մէջ՝ եղանակի (ամառ) նշում չկայ: Տպագրուած լիպրեթթոյի «Ազդ»-ին մէջ Թէրզեան կը գրէ. «Երկրորդէն մինչեւ երրորդ Արարուածը երկու տարուան միջոց մը ենթադրելու է՝ Փառանձեմայ բնաւորութեան փոփոխումը մեկնելու համար » (էջ 7): Լիպրեթթոյի Գ. արարին սկիզբը, միայն հայերէն թարգմանութեան մէջ նշուած է՝ «Ցետ երկուց ամաց» (էջ 65): Իտալերէն բնագրին մէջ համապատասխան ցուցմունքին բացակայութիւնը վերագրելի է վերոյիշեալ տպագրական վրիպակներուն: Ըստ Թէրզեանին, Փառանձեմի բնաւորութեան փոփոխման համար կարեւորը Բ. եւ Գ. արարներուն միջեւ ժամանակային հեռաւորութեան մը առկայութիւնն է: Ուստի, կ'առաջարկենք Ա. արարին սկիզբը գրել «ամառ» եւ Գ. արարին սկիզբը՝ «ձմեռ»: Այս յաւելումը անպայմանօրէն չի մատնանշեր թէ իրօք երկու տարի անցած է, սակայն տեսողականօրէն ցոյց կու տայ գէթ ժամանակի անցումը, որ կը կազմէ հարցին բուն էութիւնը:

2.- Ա. արարի Բ. տեսարանի աւարտին բեմական գործողութեան այս յաւելումը կը նպաստէ Ա. արարի Գ. տեսարանի Գնելի հոգեվիճակը աւելի ճիշտ ըմբռնելու:

3.- Ա. արարի Գ. տեսարանի բեմական գործողութեան այս յաւելումը կարեւոր է նիւթի զարգացման համար: Ան խտացուած ձեւով քաղուած է Թէրզեանի գրքոյկին մէջ գոյութիւն ունեցող տեսարանէ մը՝ որ զանց եղած է Զուհաճեանի նուագագրութեան մէջ: Ստորեւ կը ներկայացնենք Թէրզեանի բնագիրը՝ ինչպէս տպագրուած է իր լիպրեթթոյին մէջ.

**Բ. Արար, Տեսիլ Դ.**
(էջ 42-45՝ ըստ Թէրզեանի գրքոյկին)

**VARTAN**
Salve, o donna: i passi miei
Di seguir t'impone il re.

**PARANSEMA**
Ciel!

**KNEL**
Che chiedi?

**VARTAN**
E tu chi sei
Ch'osi?...

**KNEL**
O donna?

**ՎԱՐԴԱՆ**
Ողջո՛յն բամբշանդ. թագաւորը կը պատուիրէ քեզ հետս գալ:

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Երկի՜նք:

**ԳՆԵԼ** *(Վարդանայ)*
Ի՞նչ կը խնդրես:

**ՎԱՐԴԱՆ**
Ո՞վ ես դու որ կը համարձակիս...

**ԳՆԵԼ** *(Փառանձեմայ)*
Կի՞ն դու...

**PARANSEMA**
Io son con te!

**KNEL**
Or disprezzo...

**VARTAN**
O ria baldanza!...

**KNEL**
Frena i detti, o fatal messo!

**PARANSEMA** *(a Knel)*
Taci!

**VARTAN** *(a Paransema)*
Vieni...

**KNEL**
O tracotanza...
Non v'andrà!

**PARANSEMA**
Ciel!

**VARTAN**
Chi è mai desso?...
*(s'avanzano le truppe)*

**KNEL**
Chi rapirla da me sarà ardito
Calpestarmi pria il corpo dovrà.

**VARTAN**
Cedi.

**KNEL**
Mai!

**PARANSEMA**
Deh pietà.

**KNEL** *(è colto da dietro)*
Son tradito.

**VARTAN**
Fien divisi.

**KNEL**
Un amplesso!

**PARANSEMA**
L'estremo sarà.*(exeunt)*

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Հետդ եմ:

**ԳՆԵԼ** *(Վարդանայ)*
Կ'արհամարհեմ ուրեմն...

**ՎԱՐԴԱՆ**
Ո՛վ յանդգնութեանդ...

**ԳՆԵԼ**
Սանձէ լեզուդ՝ բօթաբեր պատգամաւոր:

**ՓԱՌԱՆՁԵՄ** *(Գնելայ)*
Ո՛հ, լռէ:

**ՎԱՐԴԱՆ**
Եկուր:

**ԳՆԵԼ**
Ա՜յ ժպիրհ, պիտի չերթայ:

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Երկի՜նք:

**ՎԱՐԴԱՆ**
Ո՛վ է աղ:
*(զօրք յառաջանան)*

**ԳՆԵԼ**
Իրեն մօտենալու համար դիակիս վրայէն անցընելու է:

**ՎԱՐԴԱՆ**
Տեղի՛ տուր:

**ԳՆԵԼ**
Երբէք:

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Գթութի՜ւն:

**ԳՆԵԼ** *(յետեւէ վիրաւորեալ)*
Մատնուեցայ:

**ՎԱՐԴԱՆ**
Բաժնուին իրարմէ:

**ԳՆԵԼ**
Համբո՜յր մը...:

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Թերե՜ւս վերջինը: *(ելանեն)*

4.- «Ձմեռ» բառին յաւելումը արդէն բացատրեցինք թիւ 1 ծանօթագրութեան մէջ: Այս բեմական գործողութեան չարունակութիւնը հիմնուած է Թէրզեանի տպագրուած լիպրեթթոյին ուրիշ հատուածի մը վրայ, որ դուրս ձգուած է Զուհաճեանի նուագագրութենէն: Ան անմիջապէս կը յաջորդէ Գ. արարի տեսիլ Ա.-ին, որով Փառանձեմին ոճիրը աւելի հասկընալի կը դառնայ յաջորդող տեսիլին մէջ:

**Գ. Արար, Տեսիլ Բ.**
(էջ 66-75)

**PARANSEMA**
Tutto udii; ma non turbarti:
Non tradir negli occhi il core.
Ad Olimpia, al primo amore
Rieder vuole il cor fedel!

**ARSACE**
Si, mi cruccia il reo pensiero
Del martir d'una innocente.
E quest'alma alfin si pente,
E desia placare il ciel.

**PARANSEMA**
Il tuo giuro?

**ARSACE**
Tutto obblio!

**PARANSEMA**
Fin l'arcano obblii che osasti
Fra l'ebbrezza d'un istante
All' amante - confidar?

**ARSACE**
Temi, incauta, il furor mio!

**PARANSEMA**
Franger puoi d'amore i dritti:
Ci fer complici i delitti:
Nodo tal non puoi spezzar!

**ARSACE**
Paransem, sii men crudele!
Non sprezzar d'Arsace il pianto...
Non di me pietà soltanto
Deh! Per te ti prema...

**PARANSEMA**
Ah! No.
Tu le rose immacolate
Del pudor m'hai svelte: or sono
Qual mi festi infame e in dono
A te infamia recherò!

**ARSACE**
Nell' abisso spalancato
Vuoi?

**PARANSEMA**
Saprò slanciarmi ancor!

**ARSACE**
Quanto brami ti fia dato.

**PARANSEMA**
Sì?

**ARSACE**
Tel giuro sull' onor!

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Լսեցի ամեն բան՝ մի՛ խռովիր. քող աչքերդ սիրտդ չմատնեն. հաւատարիմ սիրտդ կ'ուզէ վերադառնալ Ոլոմպիադայ՝ իր առաջին սիրոյն:

**ԱՐՇԱԿ**
Այո՛, անմեղի մը տանջանքը տեսնելով՝ կը խոցոտի հոգիս, կ'զղջայ եւ կ'ուզէ ողոքել երկնից ցասումը:

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Հապա՞ քու երդումդ:

**ԱՐՇԱԿ**
Ամեն բան կը մոռնամ:

**ՓԱՌԱՆՁԵՄ** *(կեղծ անուշութեամբ)*
Կ'մոռնա՞ս մինչեւ անգամ այն գաղտնիքները զոր հաճոյից արբեցութեան մէջ սիրուհւոյդ վստահացար...:

**ԱՐՇԱԿ**
Վախցի՞ր զայրոյթէս՝ ո՛վ կին անխորհուրդ:

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Սիրոյ իրաւունքը կրնաս խորտակել, բայց ոճիրներն զմեզ դաշնակից ըրին. այդ հանգոյցը չփշրիր:

**ԱՐՇԱԿ**
Այդչափ անգութ մ'ըլլար՝ Փառանձեմ, մ'արհամարհեր Արշակայ արտասուքը, ոչ միայն ինծի գթաս՝ այլ եւ քեզի...:

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Ոչ, ոչ, դու պարկեշտութեան կկոցեալ կոկոնները այտերէս խզեցիր, հիմայ նուաստ եմ՝ որչափ զիս նուաստացուցիր, եւ անարգութիւնս քեզի վարձք կը բերեմ:

**ԱՐՇԱԿ**
Կ'ուզե՞ս փեռեկեալ վիհի մէջ...

**ՓԱՌԱԶՆԵՄ**
Ես ալ հոն պիտի զահավիժիմ:

**ԱՐՇԱԿ**
Խնդրէ՛ եւ տամ ուզածդ:

**ՓԱՌԱԶՆԵՄ**
Այո՞:

**ԱՐՇԱԿ**
Երդուեալ 'ի պատիւ Արշակայ:

**PARANSEMA**

O Prence, rendemi
L'ora furtiva
Quando d'Eufrate
Seduta in riva
Con dolci palpiti
Sognava a Knel!

O re, deh! Sveglialo
Dal tetro letto!
Ravviva l'alito
Nel sen diletto,
Fa che a me schiudasi
D'amore il ciel!

**ARSACE**

Tu piangi, o mia diletta!

**PARANSEMA**

Disperato duol m'ange e il non satollo
Affetto di vendetta
Stimol perenne accresce al pianto mio,
Nè sosta avrà fin che ne ottenga il fio.

**ARSACE**

Rabbrividir mi fanno i cupi detti!
Pietà! Pietà!

**PARANSEMA**

Sull' orlo dell' abisso
Da te medesmo al commun danno aperto,
Or che vo' meco trarti,
Seguirmi, o Arsace, nieghi,
E, codardo, mi prieghi?

**ARSACE**

Chiaro favella, che mai chiedi?

**PARANSEMA**

Sangue!
Io sulla spoglia esangue
D'Olimpia e del suo figlio
Solo terger potrò l'avido ciglio.

**ARSACE**

Tu delirii...

**PARANSEMA**

Lo vedrai!

**ARSACE**

Oh! deponi il duolo e l'ire,
La vendetta induggia almen!

**PARANSEMA**

Tal lusinga non nudrire
Io già tutto meditai! *(esce minacciosa)*

**ARSACE**

Quale orror m'invade il sen! *(exit)*

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Տուր ինծի՝ ո՛վ իշխան
Այն ժամերն երջանիկ
Երբ յափունս Եփրատայ
Նստելով լուռ մնջիկ
Ձեռն ՚ի ծնօտ սիրտ ՚ի թունտ
Խորհէի Գնելայ:

Արքա՛յ՝ զինքն արթնցուր
Իր տըխուր անկողնէն.
Այդ սիրած ծոցիս մէջ
Արծարծէ զշունչն անդրէն,
Իր աչկունք վերստին
Մէյ մ՛ինծի ժպտին...:

**ԱՐՇԱԿ**

Կուլա՞ս ո՛վ իմս նազելի...:

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Յուսահատ ցաւեր՝ վրիժուց անյագ տռփանք մը արտասուացս միակերպ զրգիռ կ՚ըլլան, եւ պիտի չդադրին մինչեւ անոնց զինը չտուժուի ինծի:

**ԱՐՇԱԿ**

Կ՚դողամ այդ սպառնալից խօսքերէն... գթու-թի՜ւն...:

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Այն վիհն եզերքը զոր դու ինքնին բացիր ՚ի կո-րուստ հասարակաց՝ ո՜վ Արշակ՝ կ՚վարանի՞ս ինծի հետեւելու եւ սիրտ ՚ի յերեր կ՚աղաչե՜ս...:

**ԱՐՇԱԿ**

Յայտնի խօսէ՛, ի՞նչ է խնդրածդ:

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Արի՜ւն...: Ես Ոլոմպիոյ եւ իր զաւկին անկեն-դան մարմնոց վրայ միայն պիտի կարենամ ջնջել անյագ բբացս արտասուքը:

**ԱՐՇԱԿ**

Կը ցնորիս դու:

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Պիտի տեսնես:

**ԱՐՇԱԿ**

Ո՛հ մէկդի թող կսկիծն ու զայրոյթը, գոնէ վրի-ժուց ժամը յապաղէ:

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Կեղծեօք մի՜ խաբուիր, արդէն ամեն բան պատրաստ է: *(ելանեն)*

**ԱՐՇԱԿ**

Ի՜նչ արհաւիրք կ՚լնում. *(ելանէ)*

5, 6 եւ 7.- Բեմական գործողութիւններու յաւելումներ են՝ որոնք նոյն նպատակին կը ծառայեն, ինչ թիւ 4 ծանօթագրութիւնը: Թիւ 7-ի բեմական գործողութիւնը կարելի է իրականացնել՝ եթէ Արշակի եւ Վարդանի ելքէն ետք, նուագախումբի աքորն ու թրիլը քիչ մը երկարաձգել:

8, 9, 10, 11, 12, 13, 14, 15 եւ 16.- Այս բոլոր նոր բեմական գործողութիւնները յղացուած են Դ. արարի Բ. տեսարանի պատահարներուն չափազանց չփոթ չարունակականութիւնը յստակեցնելու համար: Այս խառնաշփոթութիւնները արդիւնքն են այն բանին, որ՝ ինչպէս նշեցինք, Զուհաճեանի նուագագրութեան մէջ այս տեսարանը ամենէն աւելի կը տարբերի Թէրզեանի տպագրուած գրքոյկի համապատասխան տեսարանէն: Ինչպէս նշեցինք՝ Զուհաճեան խնդրած է Թէրզեանէն փոխել օփերային աւարտը եւ կամ ինք անձամբ փոփոխութիւններ ներմուծած է բառերուն մէջ: Այս վերջին ենթադրութիւնը մասամբ կը հիմնաւորենք այն իրողութեամբ՝ թէ այս տեսարանին մէջ իտալերէն նախադասութիւններու որոշ հատուածներու լեզուական ոճը տարբեր է Թէրզեանի ոճէն եւ կը բովանդակէ լեզուական-դարձուածաբանական որոշ սխալներ (ըստ լեզուաբան, փրոֆ. Փասքալ Կապելլոնէին): Այստեղ, Թէրզեանի գրքոյկին եւ Զուհաճեանի նուագագրութեան միջեւ գլխաւոր տարբերութիւնը՝ Արշակի եւ Փառանձեմի սպանութիւններն են: Թէրզեանի գրքոյկին մէջ, Արշակն ու Փառանձեմը նախարարներու ձեռքով կը սպանուին բեմէն դուրս, մինչդեռ Զուհաճեանի նուագագրութեան մէջ անոնք պարզապէս դուրս կ'ելլեն՝ առանց ոչ մէկ յիշատակութեան իրենց ճակատագրին մասին: Նուագագրութեան մէջ, իւրաքանչիւրի երգի ձայնամասին վերջաւորութեան գրուած է պարզապէս parte (կը մեկնին): Այսպէս, Արշակի եւ Փառանձեմի բեմական ճակատագրին եզրակացութիւնը անաւարտ կը մնայ օփերային մէջ: Դժուար չէ հետեւցնել՝ թէ հեղինակները վերաքաղի ենթարկած են բեմին վրայ, կամ նոյնիսկ բեմէն դուրս, արքայասպանութեան թեման արծարծել: Օսմանեան Բարձրագոյն Դուռը մօտէն կը հսկէր բեմէն ցուցադրուող ամէն տեսակ հակասուլթանական թեմաներ արտայայտող վարկածները: Շէքսփիրի «Համլէթ»-ը, օրինակ, յետագային պաշտօնապէս արգիլուեցաւ Պոլսոյ մէջ: Նշենք, որ «Արշակ Բ.» օփերայի նիւթին մէջ կայ նաեւ ուրիշ արքայասպանութեան թեմա մը, երբ Արշակ կը սպանէ իր հայրը՝ Տիրան թագաւոր (տե՛ս մեր ծանօթագրութիւններու Փոփոխութիւններ բաժինը, թիւ 2 եւ 3): Այս տեսարանն ալ զանց եղած է օփերայի վերջնական նուագագրութեան մէջ՝ վստահաբար նոյն մտահոգութեամբ: Թատերական հարցը կը բարդանայ այն պատճառով՝ որ Դ. արարի Բ. տեսարանի հաւանաբար ինքնա-գրաքննութեան ենթարկուած այս տարբերակը, պատմութիւնը եզրակացութեան յանգեցնող որեւէ այլ լուծում չ'առաջարկեր: Մեր կարծիքով, այս պակասը լրացնելու լաւագոյն միջոցը պարզապէս օփերային մէջ վերականգնելն է Թէրզեանի սկզբնական մտայղացումը, այսինքն՝ Արշակի եւ Փառանձեմի մահերը: Կ'առաջարկենք Արշակի սպանութիւնը նախարարներուն կողմէ, քուլիսին մէջ, ինչպէս գրած էր Թէրզեան: Գալով Փառանձեմի մահուան, կրկնութենէ խուսափելու համար, կ'առաջարկենք ինքնասպանութիւն: Կարեւոր է նշել այստեղ, որ այս նոր միտքը՝ թէ Փառանձեմ կը խմէ ինքն իր թունաւորած բաժակը, միակ դէպքն է՝ զոր հնարուած է մեր կողմէ: Ոչ Թէրզեանի գրքոյկին մէջ, ոչ ալ Զուհաճեանի նուագագրութեան մէջ գոյութիւն ունի նման վարկած: Կը խորհինք, սակայն, որ այս յաւելագրումը՝ օփերային ու յատկապէս Փառանձեմին կու տայ թատերական տրամաթիզմ եւ օփերայի վայել աւարտ մը:

Ահա Թէրզեանի օփերային աւարտը՝ այնպէս ինչպէս տպուած է լիպրեթթոյին մէջ.

**Դ. Արար**

(էջ 94 - 111՝ ըստ Թէրզեանի գրքոյկին)

**Տեսիլ Գ.**

| | |
|---|---|
| *Sala splendidissima* | *Սրահ շքեղ* |
| **ARSACE, OLIMPIA, VALINACE, SATRAPI, DAME, PARANSEMA** *(dietro la scena)* | **ԱՐՇԱԿ, ՈԼՈՄՊԻԱ, ՎԱՂԻՆԱԿ, ՆԱԽԱՐԱՐՔ, ՓԱՌԱՆՁԵՄ** *(յետկուստ վարագուրին)* |
| **ARSACE** *(incommincia la festa)*<br>Suonino lieti i canti. | **ԱՐՇԱԿ**<br>Զուարթ հնչեն նուագները. *(հանդէսը կ'սկսի)*: |
| **PARANSEMA**<br>Giunta è l'ora! | **ՓԱՌԱՆՁԵՄ**<br>Ժա՛մն հասաւ: |
| **ARSACE**<br>O ciel sperare osai! | **ԱՐՇԱԿ**<br>Ո՛վ երկինք... եւ ես յուսա՜լ համարձակեցայ: |
| **PARANSEMA**<br>Che speri? | **ՓԱՌԱՆՁԵՄ**<br>Յուսա՜լ... եւ ի՞նչ: |
| **ARSACE**<br>Taci! | **ԱՐՇԱԿ**<br>Լռէ՛: |

**PARANSEMA**
All' opra io volo omai.

**ARSACE**
O rio destin, vincesti!

**PARANSEMA**
Ombra di Knel, sorridi!

**VALINACE** *(ad Olimpia)*
Quel riso non t'alletti.
Mendaci sono i detti
Perfidia in cor gli stà.

**OLIMPIA** *(a Valinace)*
Vo'l mio destin seguire
Ovunque egli mi guida...
Più lungo un tal martire
L'alma soffrir non sà.

**CORO DI CAVALIERI E DAME**

Del guerrier tu svegli in petto
Dolce affetto
Bel licor!
Al brillar di coppe piene
Le sue pene
Scorda il cor...

**PARANSEMA** *(entrando)*
Tremante, o donna, a' piedi tuoi m'appresso
Non ricusar benigna il tuo perdono
Al derelitto cor...
Non merta il tuo rancor.

**OLIMPIA**
È giusto il cielo!

**CORO**
Echeggin queste splendide.
Soglie di lieti canti:
Fra noi già riede Olimpia
Riedono i dolci istanti:

Siccome rosa pallida
Cui l'alba ricreò,
Sulla sua fronte limpida
Il riso ancor spuntò.

**ARSACE**
Questo giocondo calice
Sperda il livor dal sen!

**OLIMPIA**
Di speme un raggio inondami
Felice io sono appien.

**PARANSEMA** *(porgendole un nappo)*
Arra del tuo perdono
In questo dì seren
Fia'l nappo che ti porgo...

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Ես 'ի գործ կը փութամ:

**ԱՐՇԱԿ**
Յաղթեցիր՝ դժնդակ բաղդ:

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Ծիծաղէ՞ ստուեր Գնելայ:

**ՎԱՂԻՆԱԿ** *(Ոլոմպիայի)*
Չհրապուրէ զքեզ այդ ժպիտը. այդ խօսքերը կեղծ են, սրտին մէջ նենգութիւն կայ:

**ՈԼՈՄՊԻԱ** *(Վաղինակի)*
Բաղդիս պիտի հետեւիմ ո՛ւր ալ առաջնորդէ ինձ, ալ չեմ կրնար հանդուրժել այսչափ ըկանաց:

**ՊԱՐ ԱՍՊԵՏԱՑ ԵՒ ԲԱՄԲՇԱՆՑ**
*(զինուոյ բաժակք 'ի ձեռին)*
Դու քաղցր 'ի լանջըս դիւցազանց
Վառես աշխոյժ
Բո՜ց օշարակ:
Երբ լիուլի դդչեն բաժակք
Սիրտք մոռանան
Զցաւս համայն:

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Սիրտ 'ի դող՝ ո՛վ տիկին՝ ոտիցդ կ'մօտենամ, մի՜ մերժեր կարեկիր գթութիւնդ ցնորեալ հոգւոյս: Արժանի չեմ սրտմտութեանդ:

**ՈԼՈՄՊԻԱ**
Արդար են երկինք:

**ՊԱՐ**
Թող դըռնչեն զուարթ երգովք
Այս մեծաշուք արքունիք.
Վերադարձաւ ահ' Ոլոմպիա
Դառնան վայրկեանքն երջանիկ:

Ձերդ տօթահար վարդ որ ցօղով
Արշալուսոյն կազդուրի՝
Պայծառ ճակտին վրայ ծիծաղ
Նորաբողբոջ կը ծըլի:

**ԱՐՇԱԿ**
Այս զուարթ բաժակը ցրուէ սրտին դառնութիւնները:

**ՈԼՈՄՊԻԱ**
Յուսոյ նշոյլ մը կ'ողողէ զիս, երջանկութիւնս կատարեալ է:

**ՓԱՌԱՆՁԵՄ** *(բաժակ մը մատուցանելով)*
Այս երանաւէտ օրուանս մէջ՝ քուներմանդ առհաւատչեայ ըլլայ ձեռքէս այս բաժակս ընդունել:
*(Ոլոմպիա կ'խմէ)*

**Տեսիլ Դ.**

**NERSES E DETTI**

**NERSES** *(ad Olimpia che beve)*
Deh! t'arresta!
Che festi, o donna, ahi misera!
Tradita sei!

**TUTTI**
Tradita?

**NERSES**
Avvelenata!

**TUTTI**
Ciel!

**NERSES**
Scellerati Arsace e Paransema
Vostro è'l delitto!
*(Arsace rimane atterrito Paransema s'avanza con feroce trionfo)*

**PARANSEMA**
Or son' io vendicata!
Io felice coll' amante
Vivea candida e beata,
Caddi vittima insidiata
D'un infame traditor...

Ei col piè mi calpestava,
Ei svenar mio sposo ardia
Col pugnal con cui feria
Il suo veglio genitor!

Per vendetta io sol vivea
Purché fosse egli esecrato
Noi riuni l'istesso fato...
Maledetti or ambo siam!

**TUTTI**
Giustizia divina davanti al tuo cenno
La fronte atterrita noi mesti prostriam!

**ARSACE**
Che feci, o stolto? dove mi spinse
D'amore insano cieco furore!
Se almen potesse piangere il core
Ah! se potessi sperare almen...

Pioman le tenebre sull' universo...
Cinge la terra di sangue un mare...
Voglio una tomba per me cercare
Eppur la tomba si niega a me!

**NERSES E SACERDOTI**
Uso alle preci finor mi tacqui:
Già l'ira è colma, già cielo e terra
Insano ardisti sfidare a guerra...
Or del mio labbro - ascolta il suon!

**ՆԵՐՍԷՍ ԵՒ ՆՈՅՆՔ**

**ՆԵՐՍԷՍ** *(Ոլոմպիայի)*
Ո՛հ կեցիր՝ ի՞նչ կ'ընես՝ կին դու թշուառ, մատնըւած ես:

**ԱՄԵՆՔ**
Մատնուա՞ծ:

**ՆԵՐՍԷՍ**
Թունաւորուած:

**ԱՄԵՆՔ**
Ո՛վ երկինք:

**ՆԵՐՍԷՍ**
Անզգամք Արշակ եւ Փառանձեմ՝ ձեր ոճիրն է այս:
*(Արշակ կայծականահար կ'մնայ, Փառանձեմ վայրենի յաղթանակաւ յառաջ կ'մայրչի:)*

**ՓԱՌԱՆՁԵՄ**
Հիմայ վրէժս լուծեցի:
Բարեբաստիկ ես եւ անմեղ
Իմ ամուսնոյս հետ կ'ապրէի.
Մատնուելով ա՞հ զոհ ինկայ
Մէկ անօրէն բռնաւորի:

Ինքն ոտնակոխ ըրաւ հոգիս.
Ինքն ամուսինս ալ խողխողեց
Այն դաշոյնով սրով անխնայ
Իմ ալեւոր հայրս ըսպաննեց:

Վրիժուց համար լոկ կ'ապրէի...
Զինք վհէ վիհ քաշկռտեցի.
Հիմ՝ արիւնով ահա ծածկեալ
Եղանք երկուքս ալ անիծեալ...:

**ԱՄԵՆՔ**
Երկնայի՞ն արդարութիւն՝ քու հրամանացդ առ ջեւ զարհուրած գետնաբեկ կը խոնարհինք:

**ԱՐՇԱԿ**
Ի՛նչ ըրի ես՝ յիմար. ո՞ւր մղեց զիս ամօթալից տռփանաց մոլեգնութիւնը: Ո՛հ գէթ լալ կարենար սիրտս. ո՛հ գէթ յուսալ կարենայի:

Տիեզերք մթութեան մէջ կ'ընկղմին, արեան ծովու մը մէջ կ'ընկլուզանի երկիր, գերեզման մը կը փնտռեմ՝ բայց ան ալ կ'զլանան ինձ:

**ՆԵՐՍԷՍ ԵՒ ՔԱՀԱՆԱՅՔ**
Աղօթից վարժած շրթունք լռեցին մինչեւ հիմայ.բայց արդէն լրացաւ բարկութիւնը, յանդո՞ւգն՝ զերկինս եւ զերկիր կ'իշխես 'ի մարտ հրաւիրել, հիմայ լսէ ինձմէ քու վճիռդ:

Ti maledicono le tombe aperte:
T'impreca il sangue da te versato,
Rejetto in terra, dal ciel dannato
Ti grida ognuno - maledizion...

**PARANSEMA**

D'orrendo gaudio quel duol m'inonda:
Nella tempesta lieta sorrido:
Re, non tremare, sì, ben m'affido
Ambo quel fulmine ci colse già.

E tu mio sposo, mio Knel, esulta...
Ve' dove trassi l'empio assassino!
Di sangue tinto ei s'è - perfino
Nell' ombre eterne mi seguirà!

**CORO DI CAVALIERI**

L'onor d'Armenia ci unisca, o prodi:
Si spieghi al vento l'aureo vessillo,
Echeggi intorno canoro squillo
Almo foriere di Libertà...

Coll' armi in pugno non cada in guerra
Ch'il cor non sente d'ira avvampare
Nè vuole all' empio morte giurare
Che immerso in sangue la patria ha già.

**VALINACE**

Ah! se potesse l'ardente amore
Infonder vita nel sen che langue...
Onde salvarti darei mio sangue;
La morte edace colpisca me...

Ma inutil voto! Già le mortali
Rose appassite son sul suo viso...
Sulla sua guancia mesto un sorriso
Traluce... il capo declina ahimè!

**OLIMPIA**

Non son le spiaggie del mio Bisanzio?
Batte la luna su quelle sponde
E il zeffiretto ch'increspa l'onde
Dolce accarezza, figlia, il tuo crin.

Veglia la madre su te amorosa
E per te sogna fiori e coronne...
Sulle tue labbra le labbra pone...
Fanciulla, e vago pur tuo mattin!

**CORO DI DAME**

Tu che soffristi si fiero cruccio
Di lei pietade, madre divina!
Lassa! la cinse serto di spina
E tutto il cuore le insanguinò!

Spargan nel bujo della sua tomba
Splendor divino l'eteree schiere:
L'anima, accogli, Dio! miserere
Di lei ch'in terra duol sopportò!

*(Escono turbati Arsace e Paransema. Li seguono il Pontefice ed il coro de' Sacerd.)*

Կ՚անիծեն զքեզ բացուած գերեզմանները, քու թափած արիւնդ զքեզ կ՚անիծէ, լքեալ յերկրի՝ դատապարտեալ յերկնից, ամենքը կ՚աղաղակեն քեզ՝ «անիծեա՜լ»:

**ՓԱՌԱՆՋԵՄ**

Դժոխային բերկրանօք կ՚լնու զիս այդ սուգը. զուարթ կ՚ժպտիմ փոթորկաց մէջ, մի՜ դողար՝ արքայ, երկուքս ալ միանգամայն փշրեց այդ կայծակը:

Եւ դու՝ իմս Գնել՝ իմ ամուսինս, զոհ եղիր, տես ո՛ւր քաշկռտեցի քու ամբարիշտ մարդասպանդ. արեան մէջ թաթխուած է, եւ յաւիտենական ըստ ուերաց մէջ ալ հետս պիտի իջնայ:

**ՊԱՐ ԱՍՊԵՏԱՑ**

Հայաստանի պատիւը զմեզ համախմբէ՝ ո՛վ քաջեր. ծածանին յայերս ոսկեշող դրօշք. չորս դին դռնչէ մարտագոռ շռինդը՝ աւետաբեր Ազատութեան:

Զէն ՚ի ձեռին չիյնայ պատերազմի մէջ՝ ո՛վ որ ցասման բոցերով չբորբոքիր՝ ո՛վ որ մահ չերդնուր այն ամպարշտին որ արեանց մէջ ընկղմեց զՀայաստան:

**ՎԱՂԻՆԱԿ**

Ո՛հ թէ որ բոցեռանդն սէրը կարենար կեանք ներշնչել նուաղեալ սրտի մը ... զքեզ փրկելու համար իմ կեանքս կուտայի, քու տեղդ մահը զիս կը յափշտակէր...

Ո՛ սնոտի իղձ ... արդէն մահկանացու վարդերը իր այտերուն վրայ կը թոռմին ... դէմքին վրայ մթնշաղ ժպիտ մը կը փայփլի ... գլուխը կը խոնարհէ ... աւա՜ղ...

**ՈԼՈՄՊԻԱ** *(ցնորելով)*

Ատոնք Բիւզանդիոնի ծովափունքը չե՞ն ... լուսնով արծաթափայլ կը շողան ... եւ ալիքները փայփայող զեփիւռը՝ մազերդ ալ կը գգուէ՝ աղջիկ դու:

Մայրդ սիրատարփ կը հսկէ վրադ, եւ քեզի համար ծաղիկներ ու թագեր կ՚երազէ. քու շրթանցդ վրայ կը հանգուցանէ իր շրթունքը. ո՜րչափ գեղեցիկ է առաւօտդ՝ ով կոյս ...

**ՊԱՐ ՏԻԿՆԱՆՑ**

Դու որ այնչափ անգութ ցաւեր կրեցիր՝ զթա՛ իրեն տիրամայր. ճակատ փշապսակ սիրտ նետահար՝ կը կողկողի:

Թող եթերային գնդերդ երկնաւոր լոյսեր սփռեն իր գերեզմանին մթութեան մէջ. դու ընդունէ՛ հոգին՝ Աստուած. զթա՛ իր այնչափ տառապանաց:

*(Ելանեն խռովեալք Արշակ եւ Փառանձեմ. անոնց ետեւէն կ՚երթան Հայրապետը եւ քահանայից պարը)*

**CORO**
Morte all' infame!

**ARSACE**
Sediziose voci
Proclaman la mia morte...

**CORO**
Morte all' infame coppia e fia vendetta!

**ARSACE**
Empi, tremate! a voi la morte spetta!
*(attraversa la scena col brando in pugno)*

**ՊԱՐ**
Մա՛հ անզգամին:

**ԱՐՇԱԿ**
Ապստամբաց աղաղակներ մահս կը խնդրեն:

**ՊԱՐ**
Մահ անզգամ ամոլին. եւ վրէժն 'ի գլուխ ելլայ:

**ԱՐՇԱԿ**
Դողացէք վատեր. ձեզի կ'սպասէ մահը:
*(դեսպարանէն կ'անցնի սուսերամերկ)*

**Տեսիլ Ե.**

**OLIMPIA, POLISSENA, CORO DI DAME**

**POLISSENA**
Non ti desti ancor figlia?

**OLIMPIA**
Polissena,
Meco sei tu? Letizia il cor m'infonde...
Splendor! splendor vogl'io!
Quest' alma accogli, o Dio,
D'infra i dolori acerbi
Qual tra le spine rosa...

O voi di questa misera
Conforti all' ora estrema,
Pietà di lei vi prema!
Udite un suo desir...

Quando morrò ponetemi
Accanto al figlio amato,
Nè sia l'avel turbato
Di pianto o di sospir.

Solo i cipressi ombreggino
I fior di quell' avello:
Sommesso il venticello
Ripeta i miei dolor!

Ma, o ciel! già spiega l'anima
Il volo ad altre sfere
Brilla tra l'ombre nere
Una region d'amor!
*(Tumulto d'armi e grida)*

**POLISSENA**
Quai grida!

**CORO**
Morte a Arsace!
Olimpia viva!

**ՈԼՈՄՊԻԱ, ՊՈԼԻՔՍԵՆ, ՊԱՐ ՏԻԿՆԱՆՑ**

**ՊՈԼԻՔՍԵՆ**
Չես սթափիր դեռ՝ դուստր իմ:

**ՈԼՈՄՊԻԱ**
Հետս ես՝ Պոլիքսեն, սիրտս բերկրանօք կ'զեղա նի ... լո՜յս, լո՜յս կ'ուզեմ: Ո՛վ Աստուած դու իր անգութ ցաւոց մէջէն քաղէ իմ հոգիս՝ ինչպէս փը շոց մէջէն վարդը:

Ով դուք թշուառ մէկ սրտի
Ցետին ժամուն ըսփոփանք,
Ոհ զըթութեամբ լըսեցէք
Իրեն շըթանց հուսկ բաղձանք:

Երբոր մեռնիմ՝ հանգուցէք
Զիս սիրեցեալ զաւկիս քով,
Եւ գերեզմանս մի՜ խռովէք
Հառաչանօք ու արցունքով:

Նոճիք միայն շուք սփռեն
Պառկած հողիս 'ի ծաղկունս
Եւ տերեւոց մէջ զեփիւռն
Թող որրելու գայ իմ քունս:

Բայց ո՛հ արդէն զիղլաբեւս
Պարզէ հոգիս դէպ յերկին,
Եւ մըթութեանց անդր 'ի խոր
Սիրոյ աշխարհք կը փայլին:
*(Շռինդն զինուց)*

**ՊՈԼԻՔՍԵՆ**
Ի՛նչ աղմուկ է:

**ՊԱՐ** *(արտաքոյ)*
Մա՛հ Արշակայ. կեցցէ՛ Ողոմպիա:

**OLIMPIA** *(svenuta)*
Pace!

**CORO** *(di fuori)*
Cadde l'infame coppia:
Olimpia è vendicata...
Risorgi, o patria amata,
Spento il tiranno è alfin!

**VALINACE** *(entra colla spada ignuda)*
Vittoria, sì, vittoria!
Così Dio sperda i rei!
*(scorgenda Olimpia)*
Libera, Olimpia, sei!

**OLIMPIA**
Si, muoio.

**VALINACE**
Ah!

**TUTTI**
Rio Destin!

**ՈԼՈՄՊԻԱ** *(նուաղեալ)*
Խաղաղութի՜ւն:

**ՊԱՐ**
Ինկաւ ամոլն անզգամ
Լուծուեցաւ վրէժն Ոլոմպիա
Վերկենցաղէ՛, Հայրենիք,
Ոսոխդ ինկած է ահա:

**ՎԱՂԻՆԱԿ** *(մտրանէ սուսերամերկ)*
Յաղթութի՜ւն, այո՛ յաղթութիւն. այսպէս կործանէ Աստուած անօրէնները: *(Ոլոմպիա տեսնելով)* Ազատեցա՜ր՝ Ոլոմպիա:

**ՈԼՈՄՊԻԱ**
Այո՜, կը մեռնիմ:

**ՎԱՂԻՆԱԿ**
Ա՜հ...:

**ԱՄԵՆՔ**
Անագորո՜յն ճակատագիր...:

## Գ.- ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐ

1.- Թէրզեանի տպագրուած լիպրեթթոյի (էջ 16) եւ Զուհաճեանի նուագագրութեան բառերն են.

17 VARTAN **Recitativo**
La Pa-ran-se-ma è des-sa, del Pren-ce tuo ri-
19 **Primo tempo**
val spo-sa pro-mes-sa.

Օփերային մէջ, Գնելի եւ Արշակի ազգականական կապին մասին ոչ մէկ յիշատակութիւն կայ: Գնելը միշտ կը յիշուի որպէս Փառանձեմին ամուսինը (եւ ոչ թէ promessa, այսինքն՝ խօսեցեալ): Գործող անձերու ցուցակին մէջ (էջ 8-9՝ ըստ Թէրզեանի գրքոյկին), թէ՛ իտալերէն եւ թէ՛ հայերէն լեզուներով, Փառանձեմ կը յիշատակուի որպէս Գնելի կինը: Գնելի մասին ուրիշ բացատրութիւն չէ տրուած, բացի այն՝ որ իշխան մըն է: Պատմականօրէն Գնել Արշակի եղբօրորդին է: Սակայն Թէրզեանին գրքոյկը ուշադիր կարդալով կու գանք այն եզրակացութեան՝ որ լիպրեթթիսթը զայն կը ներկայացնէ որպէս Արշակին եղբայրը: Այս եզրակացութեան յանգեցնող առաջին փաստը կը գտնենք Ա. արարի Գ. տեսարանի խօսքերուն մէջ, ուր Գնել կ'երդնու իր հօր վրէժը լուծել գոչելով՝ «La gelida salma del padre svenato vendetta mi gridà» («Խողխողեալ հօրս դիակը վրէժ կ'աղաղակէ, 'ի մարտ կը դրդէ զիս»): Նկատի ունենալով՝ որ Արշակի հայր Տիրան թագաւորը օփերային մէջ յիշատակուող միակ հօր կերպարն է, ուստի պէտք է ենթադրել՝ որ Գնել Տիրանի մասին կը խօսի եւ զայն կ'անուանէ իր հայրը: Աւելի ցայտուն ապացոյց մը կարելի է գտնել Գ. արար, Գ. տեսարանի հայերէն թարգմանութեան մէջ (էջ 85), ուր Արշակին նախկին զոհերը կը յայտնուին որպէս ուրուականներ: Երկրորդ ուրուականը իտալերէն բնագրին մէջ կ'ըսէ Արշակին. «Non ravvisi tuo fratello?» («Եղբայրդ չե՞ս ճանչնար») (էջ 84): Սակայն անոր համապատասխանող հայերէն բնագիրը Թէրզեան թարգմանած է այսպէս. «Զե՞ս ճանչնար զԳնել»: Անիկա ոչ մէկ կասկած կը թողու՝ թէ Թէրզեանի նպատակն էր անտեսել պատմական իրողութիւնը եւ Գնելը ներկայացնել որպէս Արշակին եղբայրը: Նախընտրեցինք յարգել Թէրզեանին ընտրութիւնը, եւ քանի որ Զուհաճեանի նուագագրութեան մէջ այս կէտը երբեք չէ նշուած, կ'առաջակենք Վարդանին բառերը՝ «Del prence tuo rival sposa promessa» («Քու հակառակորդ իշխանիդ խօսեցեալը») փոխել՝ «Di tuo fratello Knel, sposa promessa» -ի («Քու հարազատ եղբօրդ խօսեցեալը»):

2 եւ 3.- Թէրզեանի տպագրուած լիպրեթթոյին (էջ 26-27) եւ Զուհաճեանի նուագագրութեան բառերը հետեւեալն են.

**[Moderato]**
46 VARTAN
Di - strut - to il Per - so e - ser - ci - to, l'ar - me - no stuol rie - de - a,
50 VAR.
quan - do re - pen - te un or - di - ne d'Ar - sa - ce a noi giun - ge - a, e ad un de - sti - no in -

55 VAR. co - gni - to par - te di noi n'an - dò. In - vol - ti nel - le te - ne - bre

60 VAR. al - lo squil - lar di trom - be que' pro - di un o - ste as - sal - go - no che al lor fu - ror soc -

65 VAR. com - be: ma, oh ciel! qual rio spet - ta - co - lo il so - le a noi sve - lò!

70 KNEL **Andante** Ah! sì quel gri - do fu - ne - bre col - pi - a me pur fug -

74 K. gen - te: al lam - peg - giar de' ful - mi - ni ve - dea sul suol gia - cen - te

77 K. san - gue gron - dan - ti e pal - li - de le sal - me de' guer - rier... Smun - te co - là ed e -

81 K. sa - ni - me di don - ne stuol gia - ce - a, ve - gli e bam - bin che un

85 K. tru - ci - do ac - ciar sve - na - ti a - ve - a, a - ve - a sve - na - ti: fe - ri - a le stel - le un

89 K. fu - ne - bre suon di ven - det - ta, un suon di ven - det - ta al - tier...

Թէ՛ իտալերէն եւ թէ՛ հայերէն բնագիրներու մեկնաբանութեան մեր ջանքերը մնացին անարդիւնք: Յայտնի չէ՝ թէ ով-որուն սպանած է: Այլեւ, ո՞ր ազգին կը պատկանին «Donne...veglie bambin»-ը («Երամք կանանց եւ ծերունիք եւ երախայք»): Պարզ է՝ որ Թէրզեան որոշ «պատերազմի ոճիր» մը կը վերագրէ Արշակ թագաւորին, իր դէմ հրաւիրելով Գնելին եւ Վաղինակին զայրոյթը: Որոշեցինք այս մեներգներուն բառերը լրիւ անտեսել եւ՝ առիթէն օգտուելով, փոխարէնը օփերային մէջ ներմուծել թեմաներ՝ որոնք այլապէս դուրս մղուած էին Զուհաճեանի նուագագրութենէն բայց անհրաժեշտ են նիւթի տրամաբանական ընթացքին համար: Վաղինակի մեներգին մեր նոր բառերը կը վերականգնեն Արշակ թագաւորին հայրասպանութեան թեման: Վերջինը վերցուցած ենք Թէրզեանի գրքոյկին ուրիշ տեսարանէ մը՝ որ դուրս ձգուած է Զուհաճեանի նուագագրութեան մէջ: Տիրան թագաւորի սպանութեան վերականգնումը անհրաժեշտ համարեցինք, որովհետեւ օփերայի վերջնական նուագագրութեան մէջ յաճախ կը հանդիպինք արքայասպանութեան թեմային՝ հակառակ որ Տիրանի սպանութեան նկարագրութիւնը դուրս ձգուած է: Բացի Գնելի վերոյիշեալ խօսքերէն՝ «La gelida salma del padre ... etc.» (տե՛ս Փոփոխութիւններ, թիւ 1), Բ. արարի արիային մէջ՝ Գնել «հայրասպան» («parricida») կը կոչէ Արշակը (էջ 56-57՝ ըստ Թէրզեանի գրքոյկին): Նաեւ, օփերայի աւարտին (Դ. արար, Բ. տեսարան) (էջ 100-101՝ ըստ Թէրզեանի գրքոյկին), Փառանձեմ՝ Արշակին ակնարկելով, կ'ըսէ. «Ei svenar mio sposo ardia col pugnal con cui feria il suo veglio genitor!» («Ինքն ամուսինս ալ խողխողեց այն դաշոյնով որով անխնայ իմ ալեւոր հայրս սպաննեց»): Այստեղ դարձեալ չփոթմունքի դուռ բացող տարբերութիւններ կան իտալերէն եւ հայերէն բնագիրներուն միջեւ: Իտալերէն բնագրի «suo»-ն կրնայ վերագրուիլ թէ՛ Արշակի հօր եւ թէ՛ Գնելի հօր: Եթէ նկատի առնենք, որ Թէրզեան՝ Արշակն ու Գնելը եղբայրներ կը համարէ, ուրեմն կարեւոր չէ՝ թէ նախադասութեան մէջ «suo»-ն որուն կ'ակնարկէ: Երկու պարագային ալ Տիրանի մասին է խօսքը: Սակայն հայերէն բնագրի «իմ» բառը բոլորովին ուրիշ հարցադրումներու դուռ կը բանայ: Յանկարծ, վերջին պահուն, նոր կերպար մը՝ Փառանձեմին հայրը, կը յայտնուի պատմութեան մէջ, որուն մասին ոչ մէկ ակնարկ եղած էր ցարդ: Հաւանաբար վրիպակ մըն է եւ պէտք է կարդալ՝ «*իր* ալեւոր հայրը»:

Ստորեւ՝ Թէրզեանի գրքոյկին այն տեսարանը (տեսիլը), որուն հիման վրայ գրեցինք Վաղինակին նոր բառերը.

## Բ. Արար, Տեսիլ Ա.

(էջ 32-35՝ ըստ Թէրզեանի գրքոյկին)

*(Սրահ յարքունիս. անդրի Տիրանայ)*

### NERSES E PARANSEMA

**NERSES**

Splendor d'Armenia, oh qual t'avvolge nube...
Quale di tue virtù fù la mercede!

**PARANSEMA**

O padre, forse di Diran favelli?

**NERSES**

Di lui.

**PARANSEMA**

Che fu mi dite, o ciel!

**NERSES**

M'ascolta!
D'Arsace il padre in ceppi ignobili
Gemea nel fondo d'atra prigion.
Misero cieco! - al ciel volgendosi
Chiudea sul figlio maledizion!

Talor dal duolo spinto al delirio
Per trucidarsi volgea l'acciar:
Talor pareagli un trono il carcere:
Quivi sovrano credea regnar.

Spesso più mite lo stolto principe
Cadea supino, dicea: "Pietà!
Un solo istante di luce, un raggio
Al misero orbo chi mai darà?"

Così pregava con mesti gemiti
Quando fra l'ombre muto avanzar
Sente persona che in seno immersegli
Con truce gaudio trisulco acciar!

**PARANSEMA**

Mi manca il core... io fremo...

**NERSES**

Ascoltami...
L'empio che un veglio senza mercè
Privo degli occhi, svenó nel carcere,
Era suo figlio, è Arsace, è il re!

**PARANSEMA**

Quale frastuono io sento!

**NERSES**

Di spavento e furor questa novella
Empì tutta la corte.

### ՆԵՐՍԷՍ ԵՒ ՓԱՌԱՆՁԵՄ

**ՆԵՐՍԷՍ**

Պարծանք Հայաստանի՝ ի՜նչպիսի՜ ամպ մը կը պատէ զքեզ, ի՜նչպիսի տրիտուր ընդունեցան արժանիքդ:

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Ո՛վ Հայր՝ թերեւս Տիրանայ վրայ կը խօսիս:

**ՆԵՐՍԷՍ**

Այո՛:

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Ո՛հ, ի՜նչ եղաւ. ըսէ:

**ՆԵՐՍԷՍ**

Լո՛ւր.- Հայրն Արշակայ յանարգ շղթաներ
Ահաւոր բանտի մ՚ի խոր կը հեծէր:
Թշուա՜ռ կոյր. ՚ի մթան ամբառնալով ձեռս
Իւր որդւոյն ՚ի գլուխ կը կարդար անէծս:

Երբեմըն ցնորեալ չարատանջ ցաւէն
Կ՚ուզէր ՚ի սուսեր իւր մխուիլ անդէն,
Երբեմն իրեն զահ կ՚երեւար բանտն այն
Ուր իշխել կարծէր նա միահեծան:

Խելացնոր իշխանն երբեմն ամոքած
«Գըթութի՜ւն՝ գոչէր անկեալ ձեռնամած՝
Տարաբաղդ կոյրին ո՛հ ո՞վ պիտի տայ
Կաթիլ մը լուսոյ զոր ՚ի զուր մուրայ...»

Այսպէս կ՚աղաչէր աղի արտասուօք
Երբ ըստուերաց մէջ անձայն՝ անողոք՝
Դաշոյն յաջ՝ ծիծաղ ՚ի շրթունս՝ վազեց
Դահիճ մ՚ու սրտին երկաթը մըխեց:

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Ո՜վ ահազնալուր վէպ...

**ՆԵՐՍԷՍ**

Այն անօրէնն
Որ առ դրունս շիրմին խողխողեց ըզծերն
Եւ խըզեց ըզլոյսն ըզկեանս եւ ըզզահ՝
Արշակն է, որդին, թագաւորն է...

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Ա՜հ.
Ի՜նչ աղմուկ կը լսեմ:

**ՆԵՐՍԷՍ**

Այս լուրը արհաւրօք եւ մոլեգնութեամբ լըցուց համայն արքունիքը:

Այս տեսիլին կը յաջորդէ այլ «կրճատուած» տեսիլ մը՝ ուր երգչախումբը կ'ողբայ Տիրանին մահը եւ ողորմութիւն կը հայցէ Աստուծմէ հայրենիքին համար:

Գնելին նոր բառերը՝ որպէս Վաղինակին պատասխան, մեզի առիթ ընծայեցին երկու այլ թեմաներ ներմուծելու, որոնք էական են պատմութեան շարունակութեան եւ ըմբռնման համար. ա.- Այն հանգամանքը՝ թէ Գնել գիտէ Արշակին նպատակները իր կնոջ հանդէպ, կ'արդարացնէ իր գաղտնի վերադարձը աքսորէն եւ միացումը Վաղինակին՝ Արշակը տապալելու ծրագրին մէջ: բ.- Գնել կը զգուշացնէ Վաղինակին՝ թէ Օլիմբիան վտանգի մէջ է, որով կ'արդարանայ յետագային Օլիմբիան փրկելու Վաղինակին փորձը (Բ. արար):

Առաջին թեման քաղուած է Բ. արարի տեսիլ Գ.-էն, որ Յաւելումներ թիւ 3-ին մէջ արդէն իսկ նշուած տեսիլէն առաջ կու գայ: Ահա ամբողջական տեսիլը.

## Բ. Արար, Տեսիլ Գ.

(էջ 36-40՝ ըստ Թէրզեանի գրքոյկին)

### PARANSEMA E KNEL

**KNEL**

Ecco dell' empio il nido,
Ecco l'ara su' cui deve immolarsi
L'infame, sacro alla vendetta mia!
Invan la sorte avversa mi tradia...
Qui de' suoi sgherri in traccia m'inoltrai.
Ma qual colpisce il guardo
Dolce e fatal vista? Oh chi vegg'io?

**PARANSEMA**

Tu qui, mio sposo Knel?

**KNEL**

Tu pure, o donna!

**PARANSEMA**

Ad implorar il tuo perdon qui mossi.

**KNEL**

Qui? mio perdon? o mia delusa speme!

**PARANSEMA**

Qual mai rio sospetto
Funesta il tuo petto?
Non crescer dell' alma
Già oppressa il martir!

**KNEL**

Qualor la bufera - terribil contesa
Movea ne' deserti del cielo stranier,
La fronte adagiata - a una rupe scoscesa
Volgeva a te sola - ogni cura e pensier.

**PARANSEMA**

Tuo fu questo core
Degli anni sul fiore:
L'estremo dell' alma
Sarai tu sospir.

**KNEL**

All' aura che sibila - all' onda che geme
Chiedeva anelante - all' erbe ed ai fior,
Se avesser veduta - la dolce mia speme,
Se all' esule fida - serbavasi ognor...

### ԳՆԵԼ ԵՒ ՓԱՌԱՆՁԵՄ

**ԳՆԵԼ** *(արպաստելով յեցեալ սեան ուրեք)*

Ահա անօրինին բոյնը. ահա այն խորանը ուր պիտի զենուի վրիժուցս նուիրական անզգամը: Ի զուր մատնեց զիս ոխերիմ բաղդը: Իր դահճաց հետքերը կոխելով հոս մտայ: Բայց ի՞նչ է այս քաղցր ու մահացոյժ տեսիլը որ աչքիս կը զարնէ. զո՞վ կը տեսնեմ:

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Դու հո՞ս Գնել՝ իմ ամուսինս ...:

**ԳՆԵԼ**

Դո՛ւ ալ՝ ո՛վ կին:

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Քեզի համար ներումն խնդրելու եկայ:

**ԳՆԵԼ**

Հո՛ս. ինծի ներո՞ւմն ... ո՛վ 'ի դերեւ ելած յոյսերս ...

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Ի՛նչ անգութ կասկածով
Տագնապիս՝ ո՛վ Գնել.
Տառապեալ հոգւոյս մէջ
Կ'ուզե՞ս սուր մը մխել:

**ԳՆԵԼ**

Երբ որ մրրիկն յօտար երկնից անապատ
Գոռայր ահեղ՝ 'ի ժայռս յեցեալ զիմ ճակատ
Հառաչելով կը դառնայի ես յայն կողմ
Ուր կարծէի կար սիրտ մը դեռ զիս սիրող:

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Ի ծաղկի անդ տիոց
Քոյդ էր՝ Գնել՝ իմ հոգիս.
Անոր հուսկ հառաչանքն
Դու միայն ընդունիս:

**ԳՆԵԼ**

Քաղցրակարկաչ ալեաց՝ հողմոյն մրրկավար
Եւ թռչնեկին որ ամպերէն սլանար՝
Հարցընէի թէ լուր մը բնաւ կա՞ր ինծի
Թէ մոռցուած էի մտերմաց 'ի սրտի:

**PARANSEMA**

Oh fuggiam! fuggiam lontano!
Tua la mano, e tuo è il cor.
Se la speme a me togliesti
Deh! mi rendi almen l'amor.

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Փախչինք՝ Գնել՝ հեռու փախչինք.
Քուկդ է միայն Փառանձեմ.
Թէ ամեն յոյս կորսնցուցի՝
Գէթ նորէն սէրդ զտնեմ:

**KNEL**

Dell' esiglio i dì funesti
Provar brami ed il rigor,
Della trama ordita il laccio
Se non coglie il traditor?

**ԳՆԵԼ**

Կ'ուզե՞ս դուն հետըս ճաշակել
Աքսորանաց դառըն հաց
Թէ բռնաւորըն ճողոպրի
Ցիմ վրէժխնդիր դարանաց:

**PARANSEMA**

D'un pugnale armerò il braccio,
Forte rendemi l'amor!

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Դաշոյնով աջըս կը զինեմ,
Կ'այրացընէ զիս քո սէր:

**KNEL**

Se il nemico vienmi a tergo,
Se trafitto al suol cadrò?

**ԳՆԵԼ**

Թէ հալածէ՞ զիս թշնամին
Եւ ես իյնամ կարեվեր:

**PARANSEMA**

Il mio sen ti fia d'usbergo
O a' tuoi piedi io morirò!

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Լանջքըս վահան կ'ըլլան քեզի
Կամ կը մեռնիմ ոտքիդ դէմ:

**KNEL**

Ti ravviso or... un amplesso...
Tuo son io!

**ԳՆԵԼ**

Եկ. գրկուինք՝ կին. իմս ես դու
Եւ հիմայ զքեզ կը գտնեմ:

**PARANSEMA**

Felice me!
Vien qualcuno, o ciel...

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Երջանի՜կ եմ ... բայց ո՞վ է այդ եկողը:

**KNEL**

È un messo.

**ԳՆԵԼ**

Պատգամաւոր մը:

**PARANSEMA**

Perché armato?

**ՓԱՌԱՆՁԵՄ**

Ինչո՞ւ զինեալ:

**KNEL**

Vien dal re.

**ԳՆԵԼ**

Թագաւորէն է:

4.- Թէրզեանի գրքոյկին մէջ այս բաժնին բառերը քիչ մը կը տարբերին Չուհաճեանի նուագագրութեան բառերէն: Այնուամենայնիւ, թէ՛ Թէրզեան եւ թէ՛ Չուհաճեան այստեղ կատարած են պատմութեան չարունակական ընթացքի այնպիսի խախտում մը՝ զոր ուղղակիօրէն կարելի է «սխալ» անուանել: Ահաւասիկ Թէրզեանին բառերը (էջ 48-49).

**VALINACE**

Da spietato demonio Arsace spinto
Ucciderti qui vuole, e Paransema
L'unico tuo figliuol brama estinto,
Senza rivale per regnare o tema.

**ՎԱՂԻՆԱԿ**

Լո՛ւր եւ դողա. դժնեայ դիւէ մը դրդեալ
Հոս խողխողել կ'ուզէ Արշակ զՈլոմպի.
Եւ Փառանձեմ՝ ատ 'ի տիրել անմրցեր՝
Կ'ուզէ սպաննել ըզմիամօր քո որդի:

Ահա նոյն բաժինը՝ ըստ Չուհաճեանի նուագագրութեան.

**[Allegro moderato]**

73 **VALINACE**






Երկու տարբերակներն ալ՝ որոնք խորքին մէջ նոյն իմաստը կ'արտայայտեն, անհնար է միահիւսել Բ. արարի դէպքերուն հետ: Փառանձեմին ամուսինը՝ Գնել, պատմութեան այդ պահուն տակաւին չէ սպանուած իսկ Փառանձեմ չէ դարձած Արշակին ակամայ կողակիցը եւ ոչ ալ ցոյց տուած թագուհի դառնալու որեւէ ցանկութիւն: Փառանձեմին վրէժխնդրութիւնը եւ ոճիրներ գործելը կը սկսին Գ. արարի Ա. տեսարանէն (Զուհաճեանի նուագագրութեան մէջ) կամ օփերայէն դուրս ձգուած Գ. արարի տեսիլ Բ.-էն (ըստ Թէրզեանի գրքոյկին) ետք (տե'ս Յաւելումներ թիւ 4): Երկու տարուան իշխանութենէ ետք է միայն, որ Փառանձեմ կը յայտնաբերէ՝ իր նախկին կնոջ, Օլիմբիային վերադառնալու Արշակին ցանկութիւնը: Այն պահուն՝ երբ Վաղինակ Օլիմբիային կը զգուշացնէ Փառանձեմէն, այս բոլորը դեռ չէր պատահած: Ուստի, այդ զգուշացումը անկարելի է: Միւս կողմէ՝ բոլորին յայտնի է Փառանձեմին տիրանալու Արշակին նպատակները: Հետեւաբար, Վաղինակ այստեղ կարող է Արշակի՝ եւ ոչ Փառանձեմի, վտանգին մասին խօսիլ, մանաւանդ որ նախորդ տեսարանի նոր գրուած բառերով արդէն ներմուծեցինք այդ թեման (տե'ս Փոփոխութիւններ, թիւ 3): Ուրեմն, այս հատուածին համար մեր առաջարկած բառերուն մէջ, Վաղինակ կ'արտայայտուի Արշակէն՝ եւ ոչ Փառանձեմէն, գալիք սպառնալիքներուն մասին:

5.- Չորս նոր տողեր աւելցուցած ենք Արշակի այս արիային մէջ: Անոնք կը հետապնդեն նոյն նպատակները՝ որոնց մասին արդէն արտայայտուեցանք Յաւելումներ թիւ 4, 5, 6 եւ 7-ին մէջ:

Տրուած ըլլալով՝ որ Զուհաճեանի նուագագրութեան մէջ արիայի այս հատուածին երաժշտութիւնն ու բառերը կը կրկնուին երկու անգամ, կարելի եղաւ բնագրին կրկնութեան փոխարէն պարզապէս ներմուծել այս չորս նոր տողերը:

6.- Նոր բառեր գրելու պատճառը այստեղ եւս կապուած է Փառանձեմի հոգեբանական զարգացումը արդարացնելու հետ, ինչպէս մանրամասնօրէն բացատրած ենք Յաւելումներ թիւ 4, 5, 6 եւ 7-ին մէջ:

Թէրզեանի տպագրուած լիպրեթթոյի եւ Զուհաճեանի նուագագրութեան բառերը հետեւեալն է.

[Andante mosso]
74 Tenori
S A T R A P I
i pas-si pre-me, col - mo il do-lor!
Bassi
i pas-si pre-me, col - mo il do-lor!

7.- Այս հատուածի նոր բառերուն նպատակն է աւելի եւս զարգացնել Փառանձեմի սպառնալիքներուն թեման, որ դուրս ձգուած էր Գ. արարէն (նշած ենք Յաւելումներ թիւ 4-ին մէջ): Այս ձեւով կարելի է որոշ չափով նախապատրաստել եւ արդարացնել յետագայ ոճիրը: Այլապէս, Օլիմբիայի թունաւորումը անհասկնալի եւ անսպասելի կրնայ թուիլ:

Թէրզեանի տպագրուած լիպրեթթոյի եւ Զուհաճեանի նուագագրութեան բառերն են.

[Allegro]
372 PARANSEMA
ա.- sot-to cruen-ta, pur-pu-rea cla-mi-de, cin-ta la fron-te pur di ci-pres-so,

[Allegro]
386 PARANSEMA
բ.- s'in-vo-le-ran! s'in-vo-le-ran! s'in-vo-le-ran!

[Allegro]
409 PARANSEMA
գ.- sot-to cruen-ta, pur-pu-rea cla-mi-de, cin-ta la fron-te pur di ci-pres-so, ah!

[Allegro]
427 PARANSEMA
դ.- s'in-vo-le-ran! s'in-vo-le-ran!

8.- Quartettino-ի (տե'ս Վերականգնումներ թիւ 2) Արշակի դերամասին վերջին երկու տողերը ստեղծըւած են ցոյց տալու կացութիւնը ըմբռնելու Արշակի անկարողութիւնը եւ երկմտանքը, ինչ որ կրնայ բացատրել՝ թէ ինչու Արշակ Փառանձեմի ոճիրը չի կանխեր:

9.- Փոփոխութիւնն այստեղ կը նպաստէ յստակեցնելու՝ թէ Օլիմբիային նման ինք ալ (Փառանձեմ) պիտի մահանայ: Ինչպէս նշեցինք Յաւելումներ թիւ 8-16-ին մէջ, Փառանձեմի տիպարը կարիք ունի եզրափակիչ աւարտի մը:

Թէրզեանի տպագրուած լիպրեթթոյի եւ Զուհաճեանի նուագագրութեան բառերն են.

[Andante maestoso]
37 PARANSEMA
pur-ché fos-se e-gli e-se-cra-to

10.- Ասիկա երաժշտականօրէն միակ տեղն է՝ ուր կարելի է Արշակի մահը յայտնել: Այս Հատուածին մասին արդէն նշեցինք Յաւելումներ թիւ 8-16-ին մէջ: Սոյն նախադասութիւնը՝ իր այս ձեւով, Թէրզեանի գրքոյկին մէջ չկայ, իսկ Զուհաճեանի նուագագրութեան մէջ բնագիրն այսպէս է.

[Religioso]

184 VALINACE

Oh! rio do - lor

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# أرشـــاج الثـــانى

أوبرا من أربعة فصول

**موسيقى : ديكران تشوهاچيان**

**النص الشعري : توماس ترزيان**

نسخة الغناء والبيانو

التحرير الموسيقى : هايج أفاكيان

تحرير النص الشعري : جيرالد پاپازيان

القاهرة

٢٠٠٠